# ՀՈԿՏԵՄԲԵՐՅԱՆ ՆՎԵՐՆԵՐ

ՄԻՔ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆ

Նկ. Մ. ՏԻՐԱՏՈՒՐՅԱՆԻ





Հոկտեմբերը մեզ բերել է
Ինչ որ թանկ է բոլորիս,
Հոկտեմբերյան նվերները
Ինչպե՞ս թվեմ, սիրելի՛ս:

Դու սիրո՞ւմ ես ջերմ արևը,
Որ ողջույն է քեզ հղում.
Այդ արևն էլ մեզ բերել է
Հոկտեմբերը շողշողուն:

Դու՝ հայրենիք, դու՝ տուն ունես
Դպրոց, ճամբար, պայծառ կյանք,
Այդ բոլորը բերել է քեզ
Հոկտեմբերը հաղթական...





Նվերները հոկտեմբերյան
Նվաճել է արյունով
Կոմունիզմի հզոր պարտիան
Եվ պաշտպանել իր կրծքով...

Հոկտեմբերը մեզ բերել է
Ինչ որ թանկ է բոլորիս.
Հոկտեմբերյան նվերները
Ինչպե՞ս թվեմ սիրելի՛ս...



Լենինի—Ստալինի գործի պայքարին եղի՛ր պատրաստ




№ 11

ՆՈՅԵՄԲԵՐ

1953 թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 25-րդ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

**Ջոկատի աշխատանքի պլանը իրագործվում է.**

*Երևանի 52-րդ դպրոցի 6-րդ ջոկատի 3-րդ օղակը դպրոցական պիոներների գործարանի տետրակի ցեխում. ցեխի վարիչ Լ. Հակոբյանը ցույց է տալիս գծող մեքենայի աշխատանքը։*

Ֆոտո՝ Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ

# ՊԱՐՏԻԱՅԻ ՂԵԿԱՎԱՐՈՒԹՅԱՄԲ

Քսանուր տարի առաջ Սովետական Միության Կոմունիստական պարտիայի 14-րդ համագումարը ժողովրդի առաջ մի մեծ խնդիր դրեց. զարգացնել ծանր արդյունաբերությունը: Առանց այդ խնդիրը կատարելու մեր Հայրենիքը չէր կարող դառնալ հզոր ու անկախ:

Մինչև այդ, ծանր արդյունաբերության շատ ճյուղեր գոյություն չունեին մեզ մոտ:

Համագումարից հետո անցած տարիների ընթացքում մեր երկիրը մեծ հաջողություններ ունեցավ ծանր արդյունաբերության ասպարեզում. արդյունաբերական արտադրանքն ավելացավ 29 անգամ: Երկրի շատ շրջաններում ստեղծվեցին արդյունաբերական նոր կենտրոններ:

Հիմա երկիրն ունի հզոր ծանր արդյունաբերություն, որը զինված է ամենակատարյալ տեխնիկայով:

Այժմ բոլոր հնարավորությունները կան չտեսնված թափով զարգացնելու թեթև և սննդի արդյունաբերությունը:

Ժողովրդին շատ կոշիկ, հագուստ, կահույք, միս, յուղ, շաքար և այլ մթերքներ տալու համար շատ էլ հումք է հարկավոր՝ կաշի, բուրդ, կաթ, ճակնդեղ և այլն: Այդքան հումք արդյունաբերությանը և մթերքներ՝ բնակչությանը կարող են տալ մեր կոլտնտեսություններն ու սովխոզները: Դրա համար էլ պետք է հոգ տանել, որ մեր սոցիալիստական գյուղատնտեսությունը զարգանա ավելի արագ և բնակչությանը տա այն ամենը, ինչ որ անհրաժեշտ է լավ ապրելու համար:

Այս խնդիրը հաջողությամբ կատարելու համար է, որ մեր Պարտիան և Կառավարությունը կտրուկ միջոցներ են ձեռք առել:

Մեծ հոգատարություն է ցույց տալիս մեր Պարտիան սովետական բոլոր քաղաքացիների նկատմամբ: Ժողովրդի բարեկեցության համար է, որ մենք զարկ ենք տալիս առևտրին: Լայնորեն ծավալել սովետական առևտուրը. սա էլ առաջնահերթ խնդիր է: Երկուերեք տարի հետո մեր երկրում այնքան խանութներ պետք է լինեն, որ ամեն քաղաքում, ամեն մի գյուղական շրջանում մարդիկ կարողանան գնել բոլոր անհրաժեշտ ապրանքները: Ապրանքների գների իջեցումը նույնպես ավելի ուներ է դարձնում սովետական մարդկանց կյանքը: Մարդիկ ավելի լավ են ապրում, ավելի ուրախ:

Մեծ գումարներ է ծախսում պետությունը նաև բնակելի շենքերի, դպրոցների, բուժական ու մանկական հիմնարկների կառուցման համար:

Այս մեծ ու անհետաձգելի խնդիրների կատարման համար, ժողովրդի բարեկեցության հետագա բարելավման համար ամեն մի մարդ ավելի լավ պետք է աշխատի: Ավելի լավ պետք է օգտագործել մեր հիանալի տեխնիկան, որը թեթևացնում է մարդու աշխատանքը:

Այս բոլոր հարցերի մասին էր խոսվում Սովետական Միության Գերագույն Սովետի 5-րդ սեսիայում, որը կայացավ այս տարվա օգոստոս ամսին: Այդ առաջնահերթ անելիքների մասին խոսեց այդ սեսիայում մեր կառավարության ղեկավար, Մինիստրների Սովետի նախագահ ընկեր Գ. Մ. Մալենկովը: Նա կոչ արեց այնքան մթերք, հագուստ, կոշիկ և այլ ապրանքներ արտադրել, որ ամբողջ սովետական ժողովուրդը լիուլի ապահովվի:

Մեծ խնդիրներ են դրված մեր Հայրենիքի առջև: Դրանք կատարելու համար անհրաժեշտ է խաղաղություն. խաղաղություն ամբողջ աշխարհում, որի համար պայքարում ենք մենք:

Գերագույն Սովետի 5-րդ սեսիան հաստատեց մեր երկրի այս տարվա բյուջեն, որի մեջ նախատեսված են հսկայական գումարներ թեթև ու սննդի արդյունաբերության, գյուղատնտեսության և առևտրի զարգացման համար:

Ամե՛ն ինչ ժողովրդի բարեկեցության համար. այս է մեր մեծագույն խնդիրը: Եվ մենք կկատարենք այդ, Հոկտեմբերյան Մեծ ռևոլյուցիայի բոցերում ծնված, հանճարեղ Լենինի կողմից հիմնադրված պանծալի Կոմունիստական պարտիայի փորձված ղեկավարությամբ:





# ԿԱՐԻՆԵԻ ՀԱՄԱԶԳԵՍՏԸ

*Մ. ՎՇՏՈՒՆԻ*

*Նկ. Հ. ՀԵՔԵՔՅԱՆԻ*

*Երբ առաջին դասը վերջացավ, ուսուցչուհին ասաց.*

*— Երեխանե՛ր, լավ կլինի, որ դուք բոլորդ էլ միատեսակ հագնվեք, ա՛յ, ինչպես Նորան։*

*Բոլորը նայեցին Նորային. իսկապես որ նրա հագուստը գեղեցիկ էր։*

*Դասերից հետո Կարինեն գնաց տուն և ամեն ինչի մասին պատմեց մորը։*

*— Նորայի հագուստը ամենից լավն էր, մայրի՛կ. օձիքին ու թևերին նուրբ ժանյակներ կային, իսկ գոգնոցը ծալքավոր էր, սիրուն։ Ուսուցչուհին ասաց, որ դպրոց գնալիս մենք բոլորս այդպես հագնվենք...*

*— Լավ,— պատասխանեց մայրիկը շոյելով աղջկա մազերը,— գնանք մանկական արհեստանոց և քեզ համար էլ այդպիսի համազգեստ պատվիրենք։*

*Մի քիչ անց նրանք դուրս եկան փողոց։*

*Սեպտեմբերի պարզ ու արևոտ օրերից մեկն էր։*



Ձևարար Ա. Թոռոսյանը վերցնում է առաջին դասարանցի Անահիտ Սիմոնյանի չափսը։

*— Գնանք ոտքով,— ասաց մայրը,— դասերից հետո բաց օդում զբոսնելը շատ օգտակար է։*

*Նրանք Ստալինի պողոտայով բարձրացան վեր ու կանգ առան դալար բարդիների կանաչ պուրակի մոտ։*

*Այդտեղ, գեղեցիկ մի շենքի առաջին հարկում տեղավորված էր Երևանի անհատական պատվերների կարի ֆաբրիկայի մանկական բաժինը։*

*Մայրն ու Կարինեն ներս մտան։ Լայն ու ընդարձակ ընդունարանի փայլուն հատակը ամբողջապես ծածկված էր գեղեցիկ գորգերով։ Պատերին՝ հայելիներ, առաստաղին՝ մեծ-մեծ ջահեր։*

*Փափուկ բազմոցներին ու բազկաթոռներին նստել էին փոքրիկ պատվիրատուները։ Նրանցից ոմանք մոդաների գրքեր էին թերթում, ոմանք գրքեր կարդում, իսկ մյուսները պատերի նկարներն էին դիտում։*

*Նորեկներին նկատելով պատվեր ընդունողը՝ կոնվեկցիոները մոտեցավ նրանց.*

*— Դուք պատվիրե՞լ եք ցանկանում,— հարցրեց նա։*

*— Այո,— պատասխանեց Կարինեի մայրիկը.— աղջիկս արդեն դպրոց է գնում, աշակերտական համազգեստ է հարկավոր։*

*— Խնդրե՜մ,— սիրալիր ասաց կոնվեկցիոները, ցույց տալով ապակեպատ մի ցուցափեղկ, որտեղ կախված էին մանուկներին հարմար կտորեղենի զանազան նմուշներ։*

*Կարինեի մայրիկը դիտեց բոլորը, զգեստի համար կոֆեի գույնի «քիշմիր» կտոր ընտրեց և դրանից դպրոցական համազգեստ պատվիրեց։*

*— Գիտե՞ս, մայրի՛կ,— ասաց Կարինեն,—Նորան ինձ պատմեց, որ ինքը երկու գոգնոց ունի, սև ու սպիտակ. ես էլ եմ ուզում երկու գոգնոց։*

*— Լավ, աղջի՛կս,— պատասխանեց մայրիկը,— երկու գոգնոց ունենալը նույնիսկ անհրաժեշտ է։ Սև գոգնոցը պետք է հագնել*

դասի գնալիս, իսկ ճերմակը՝ տոնական օրերին ու դպրոցական հանդեսների ժամանակ։

Կարինեի մայրիկը մուգ վարդագույն կտորից մի վերարկու էլ պատվիրեց։

— Սա Մոսկվայո՞ւմ են գործել,— հարցրեց Կարինեն։

— Ոչ,— շտապեց պատասխանել կոնվեկցիոները,— սա Երևանյան «տրիկո» է։

Մայրիկը վերարկուի համար ձև ընտրեց։ Կոնվեկցիոները վերցրեց Կարինեի չափսը, ձևակերպեց և ասաց, որ շաբաթ օրը գան չափսն ստուգելու։

Որոշված օրը Կարինեն մայրիկի հետ նո-



Դերձակուհի Լ. Խլոյանը նամազգեստ է կարում։

րից արհեստանոց գնաց։ Այս անգամ նրան ընդունեցին ծանոթի պես։ Կարող բանվորուհին եկավ Կարինեի շորը թևին գցած։ Եկավ նաև ձևարարը։ Նրանք առանձնացան հայելապատ մի փոքրիկ սենյակում։ Ձևարարը Կարինեին հագցրեց անավարտ շրջազգեստը, ուշադիր դիտեց, մկրատով կարեց ավելորդ մասերը, ուղղեց, տեղ-տեղ ամրացրեց քորոցներով, ապա դիմելով Կարինեին ասաց.

— Ինչպե՞ս է, հավանո՞ւմ ես։

— Այո, շատ լավն է,— ուրախ պատասխանեց Կարինեն։

Քիչ անց մի ուրիշ ձևարարի հետ եկավ նաև վերարկու կարող բանվորը։ Նա նույնպես հագցրեց վերարկուն և չափսը ստուգեց։

Այդ րոպեին արհեստանոցի ներսից ինչ-որ անսովոր աղմուկ լսվեց։

— Այս ի՞նչ ձայն է,—հարցրեց Կարինեն։

— Մեքենաներն են աղմկում։

— Մեքենանե՞րը,—զարմացավ Կարինեն.— ես ուզում եմ տեսնել, հետաքրքիր է։

— Դրա համար հարկավոր է բաժնի վարիչի թույլտվությունը։ Թող մայրիկը նրան դիմի,— ասաց ձևարարն ու շտապեց իր գործին։

Արհեստանոցի վարիչ Շուշիկ Իգիթխանյանը սիրով ընդառաջեց Կարինեին ու նրան տարավ բանվորների աշխատանքը ցույց տալու։

— Թող մայրիկն էլ գա,— ասաց Կարինեն։

— Խնդրեմ, թող գա,— համաձայնեց վարիչը և նրանց առաջնորդեց մի ընդարձակ ու լուսավոր սենյակ։

Նրանց հետևից կամացուկ ներս մտավ մի տղա, ապա մի աղջիկ, հետո երրորդը, չորրորդը։ Նրանք կանգ առան մուտքի մոտ։

— Առաջ եկեք, երեխանե՛ր, տեսնում եմ, որ ձեզ էլ են հետաքրքրում մեր մեքենաները,— ժպտալով ասաց Շուշիկը։

Երեխաները մոտ եկան։

— Այստեղ կողք-կողքի աշխատում են երեք ձևարար,— սկսեց իր զրույցը արհեստանոցի վարիչը։— Նրանցից Ամալիա Թորոսյանը ձևում է միայն շրջազգեստի անհատական պատվերներ։ Հիմա նա ծաղկավոր կտորից ձևում է յոթ տարեկան Անահիտի թիթեռնաձև շրջազգեստը։

Կարինեն իսկույն ճանաչեց ձևարար Ամալյային։ Չէ՞ որ իր շրջազգեստն էլ նա էր ձևել։

— Իսկ ընկեր Հակոբ Սիմիթյանը,— շարունակեց վարիչը,— ձևում է միայն տղաների կոստյումներ ու վերարկուներ։ Երրորդ վարպետը ձևում է վերարկուներ մասսայական կարի բրիգադայի համար։ Հիմա նա ձեզ ցույց կտա, թե ինչպես է աշխատում ինքը։

Ձևող վարպետ Իշխան Սահակյանը լայն սեղանի վրա մի քանի տակ փռեց վառ կարմիր գույնի կտոր, ձեռքով հարդարեց, կավիճով գծեց, ապա մոտ բերեց էլեկտրական մկրատն ու միացրեց լծակը։ Խոշոր ու կլոր տարկան սկսեց շրջել կտորի հաստ շերտի վրայով։ Վարպետն իր ճկուն շարժումներով ճիշտ ուղղություն էր տալիս քայլող մկրատին։ Կարինեն, որ մինչև այդ դիտում էր, թե ինչպես էր ձևարարը ձևում Անահիտի ճիթենաձև շորը, սթափվեց էլեկտրական մկրատի աղմուկից։ Վարպետ Սահակյանն ընդամենը մի քանի րոպեում հիսուն վերարկու ձևեց։

— Դե՛, հիմա եկեք այս սանդուղքով վեր բարձրանանք, տեսնենք ի՞նչ են անում այնտեղ մեր բանվորները։

Լուսավոր սենյակում, կարող մեքենաների առջև, շարքով նստել էին բանվորուհիները և վերարկուներ էին կարում։

— Սա մասսայական կարի բրիգադան է. ձևարանում ձևած վերարկուները բերվում են այստեղ կարելու։ Բանվորուհիներից ամեն մեկը մի գործ է կատարում։ Մեկը միացնում է վերարկուի մասերը, մյուսը հարմարեցնում է բանվածքը, երրորդը աստառն է կարում, չորրորդը կպցնում է թևերն ու կոճակները։ Երբ վերարկուն արդեն պատրաստ է, խոտանողը ստուգում է և հանձնում պահեստ։ Եթե վերարկուն թերություն ունի, խոտանողը վերադարձնում է շտկելու։

Այդտեղ էին աշխատում նաև անհատական պատվերներ կարողները։ Նրանցից ամեն մեկը պատվիրված շորը կարում էր ամբողջությամբ։

Կից սենյակում աշխատում էին տղամարդիկ։ Նրանք տղաների կոստյումներ ու վերարկուներ էին կարում։ Դիմացի պատին ամրացված էր եռանկյունաձև կարմիր դրոշը։ Դա նշանակում էր, որ այս բրիգադան ամենից առաջավորն է բաժնում։

Բրիգադիր Անդրանիկ Դեմիրճյանը էլեկտրական մեքենայով կոստյումների ու վերարկուների վրա օղակներ էր սարքում։ Մեքենան հատուկ հարմարանքի միջոցով միաժամանակ երեք գործ էր կատարում։ Նախ բաց էր անում օղակը, լցնում ու ավարտելով ինքն իրեն կանգ էր առնում։

— Ի՜նչ զարմանալի մեքենա է,— բացականչեց Կարինեն։

— Ինչքա՜ն էլ արագ է աշխատում,— ավելացրեց մեկ ուրիշը...

Անցավ մի շաբաթ։ Մի օր էլ Կարինեն դպրոցից ուրախ զվարթ եկավ տուն։

— Վաղը մենք էքսկուրսիա պիտի գնանք, մայրի՛կ. ես ուզում եմ իմ նոր շրջազգեստը հագնել,— ասաց Կարինեն փարվելով մորը։

— Շատ լավ,— համաձայնեց մայրիկը,— երևի արդեն պատրաստ է, գնանք տեսնենք։



Այսօր Անահիտը նոր համազգեստով է եկել դպրոց։

Երբ նրանք արհեստանոց մտան, կոնվեկցիոները մոտեցավ ու սիրալիր ասաց.

— Ձեր պատվերներն արդեն պատրաստ են...

Հաջորդ օրը Կարինեն դպրոց գնաց իր նոր համազգեստով։ Ընկերուհիները շրջապատեցին նրան ու սրտանց շնորհավորեցին։ Իսկ Կարինեն նրանց պատմում էր այն ամենի մասին, ինչ տեսել էր արհեստանոցում։

# ՆՈՐ ՏՈՒՆԸ

ՌՈՒԲԵՆ ՂԱՐԻԲՅԱՆ

Ֆոտո՝ Ք. ՍԽՎԱՆՑՅԱՆԻ

— Խաչի՛կ, այսօր հյուր եկ մեզ,
Մեր նոր տունը ցույց տամ քեզ:
— Ի՞նչ տուն, ես չեմ իմացել.
— Հենց երեկ ենք ստացել:
Համաձայնեց Խաչիկը.
Ուրախացավ Վաչիկը:
Անցան նրանք երկուսով
Ասֆալտապատ փողոցով,
Անցան կանաչ մի պուրակ,
Ցայտաղբյուրներ սառնորակ,
Եվ կանգ առան արևոտ
Մի վարդագույն շենքի մոտ.
Ի՞նչ շենք՝ վեցը հարկանի,
Մեջը մի գյուղ կտանի:



— Սա՞ է,— ասաց Խաչիկը.
— Սա է,— ժպտաց Վաչիկը.
Եվ երկուսն էլ անհամբեր
Սանդուղքներով ելան վեր...
Երրորդ հարկում, մի դռան
Առջև նրանք կանգ առան.
Վաչիկն իր ձայնը մեղմեց,
Փոքրիկ կոճակը սեղմեց.

Զրը՜նգ, հնչեց զիլ զանգը
Արձագանքեց միջանցքը...
— Ո՞վ է,— կանչեց տատիկը:
— Մենք ենք,— ասաց Վաչիկը:
Իսկույն բացվեց դուռը տան
Եվ անաղմուկ ներս մտան՝
Առաջ հյուրը՝ Խաչիկը,
Հետո տանտեր Վաչիկը:
— Անա՛, Խաչիկ, նայիր, տե՛ս,
Ի՞նչ լավ տուն են տվել մեզ.
Է՛լ խոհանոց, է՛լ բաղնիք,
Է՛լ պատշգամբ գեղեցիկ.
Օդը մաքուր, լույսն առատ,
Ես տուն ասեմ, դու՝ պալատ,
Այս սենյակը մեծ ու լայն
Մեր ննջարանն է միայն,
Այս սենյակում ես նստում,
Իմ դասերն եմ պատրաստում...
Դեռ չէր ասել, երբ հանկարծ
Ուրիշ մի զանգ զրնգաց.
Վաչիկն այստեղ կարճ կապեց,
Երրորդ սենյակն շտապեց.
— Այո, ես եմ, հայրի՛կ, ես...
Բան չեմ անում, հենց այնպես...
Նոր դպրոցից տուն եկա...
Սովորելո՞ւ... քիչ դաս կա...
Փողը դրեց Վաչիկը.
Մինչդեռ փոքրիկ Խաչիկը
Նրա կողքին լուռ կանգնած
Շուրջն էր նայում հիացած...
— Խաչի՛կ, ի՞նչ ես մտածում,
Հո այս տունը չէ մենակ,
Այնքան շենք են կառուցո՜ւմ,
Շուտով դուք էլ կստանաք,
Դու էլ այսպես, ինչպես ես,
Հեռախոսով կխոսես:
Քաջալերեց Վաչիկը,
Ուրախացավ Խաչիկը,
Նորից նայեց հիացած,
Հրաժեշտ տվեց, իջավ ցած:
Իրենց տուն էր նա գնում
Եվ գնում էր և կրկնում.
«Օդը մաքուր, լույսն առատ,
Սա հո տուն չէ, այլ՝ պալատ»:

# «ՍԱՍՈՒՆՑԻ ԴԱՎԻԹԸ»

ՍՏ. ԿՈՒՐՏԻԿՅԱՆ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Մեր չքնաղ մայրաքաղաքի կենտրոնախ փողոցներով նաև գույնի մի ավտոբուս է անցնում: Շոֆերական խցիկի փայլուն ապակու աջ անկյունում փակցված է քառակուսի մի թուղթ. թղթի վրա կարմիր թվանշաններով գրված է՝ 150.000: Այդ նշանակում է, որ հմուտ մեքենավարն իր ավտոբուսով 150.000 կիլոմետր ճանապարհ է անցել, առանց հիմնական նորոգման ենթարկելու մեքենան: Շոֆերական խցիկում նստած է մեքենավար Ռոբերտ Սեթիկյանը...

Տարիներ առաջ Ռոբերտը երազում էր լինել տանկիստ, արշավել թշնամու վրա, սխրագործություններ կատարել, հերոսանալ... Եվ նա գնաց ռազմաճակատ ու զորամասի շոֆերներից կարճ ժամանակում մեքենավարել սովորեց:

Ռոբերտը հաճախ լինում էր տանկիստների մոտ, որոնց մեծ մասը երիտասարդ տղաներ էին. օգնում էր նրանց՝ մեքենայի այս կամ այն մասը սարքելու ժամանակ: Մի օր էլ, երբ նա որպես «հին շոֆեր» դիմեց հրամանատարին, որ իրեն տանկի մեքենավար ընդունեն, բոլորը միաձայն գովեցին նրան:

— Իսկ դու քանի՞ տարեկան ես, մարտի՛կ,— հարցրեց հրամանատարը:

— Տասնվեց տարեկան, ընկե՛ր փոխգընդապետ:

Փոխգնդապետ Լավրուխինը աչքերին չհավատաց: Նրա դեմ կանգնած էր զգաստ, կաղրային փորձառու զինվորի նման կռվկռացի հաղթանդամ մի երիտասարդ: Հրամանատարը մի պահ նրան ոտից-գլուխ չափելուց հետո ասաց.

— Դու այսուհետև կփոխարինես զրահատալում գտնվող սերժանտ Սմիրնովին:

— Կարդարացնեմ ձեր վստահությունը, ընկե՛ր փոխգնդապետ,— ուրախ պատասխանեց պատանին:

Առաջին անգամ Ռոբերտը տանկային գրոհի մասնակցեց բելոռուսական ռազմաճակատում...

Զմռան մի վաղ առավոտ երկինք սլացավ կարմիր հրթիռը և հրամանատարական տանկից լսվեց մարտական հրամանը.

— Առա՜ջ...

Մոտորների հռնդյունը տարածվեց ձյունածածկ շրջապատում: Ռոբերտը արագորեն աջ թեքեց իր տանկը և փշալարերը ճզմելով՝ ուղիղ գրոհեց թշնամու հրետանային այն մարտկոցի վրա, որի արկով շարքից դուրս էր եկել իր ընկերոջ տանկը: Տեսնելով իրենց վրա սլացող մեքենան, թշնամու հրետանային անձնակազմը խուճապի մատնվեց և փախուստի դիմեց: Տանկի գնդացրային կրակը հնձում էր փախչողներին:

Հանկարծ թշնամու հրետանային մի քողարկված մարտկոց ձախից կրակ բացեց: Արկը թռավ և առանց վնասելու անցավ



—Դու այսուհետև կփոխարինես սերժանտ Սմիրնովին:

տանկի աշտարակի կողքից։ Ռոբերտը ոլորապտույտ տալով, կատաղի թափով թեքվեց դեպի ֆաշիստական հրանոթը։ Նա դիտանցքից նկատեց, թե ինչպես հիտլերականները լցրին հրանոթը և պատրաստվեցին նորից կրակել իր տանկի վրա։ Մի վայրկյան ևս և արկը հրանոթի բերանից կսուրա «Տ—34»-ի վրա և վերջ... Բայց Ռոբերտն իր սառնա-



...խոշոր տառերով գրեց՝ «Երևան»:

րյունությունը չկորցրեց։ Նա սլացավ դեպի ֆաշիստական մարտկոցը։ Տանկի անձնակազմը վճռական և արագ գործողությամբ կանխեց վտանգը։ Թշնամու հակատանկային հրանոթի առաջ որոտաց «Տ—34» տանկի հրանոթը և արկը պայթեց ուղիղ հակառակորդի մարտկոցում։ Պայթյունից առաջացած ծուխը դեռ չէր ցրվել, երբ Ռոբերտի տանկը հասավ թշնամուն և հրանոթը ճզմեց իր թրթուռների տակ...

***

Անցնում էին մարտական սխրագործություններով լի ամիսները։ Մի օր էլ տանկային զորամասի հրամանատարը կանչեց Ռոբերտին և ասաց.

— Այսօր մենք ստացել ենք հզոր տանկեր, որոնցից մեկի վրա գրված է «Սասունցի Դավիթ»։ Ձեր հայրենակիցների նվիրատվությամբ է կառուցված այդ տանկը։ Դու էլ մեր զորամասի «Սասունցի Դավիթն» ես. այսպես են քեզ կոչում բոլորը։ Արժանի ես... Այդ նոր մեքենայով դու պետք է մտնես Վարշավա...

— Լսում եմ, ընկե՛ր փոխգնդապետ...

Ռոբերտի խանդավառությանը չափ ու սահման չկար։

Լեհաստանի մայրաքաղաքի ազատագրումից անմիջապես հետո, նրանց տանկային զորամասը փոխադրվեց Հեռավոր Արևելք՝ ճապոնական զավթիչների ոչնչացմանը մասնակցելու համար։

Լյաոդունյան թերակղզու ծովափնյա խճուղիով, Դեղին ծովի եզերքով, «Սասունցի Դավիթը» հաղթական սլանում էր դեպի Պորտ-Արտուր։

Քաղաքին մոտ տանկը կանգ առավ։ Անձնակազմը մտահոգության մեջ ընկավ։ Ի՞նչ էր պատահել արդյոք, ինչո՞ւ կանգ առան. մի՞թե առաջինն իրենք չպիտի մտնեն Պորտ-Արտուր։

— Ռոբե՛րտ, ի՞նչ է, վնասվե՞ց մեքենան։

Ռոբերտն առանց պատասխանելու շտապ դուրս եկավ տանկից, կավիճը ձեռքին բարձրացավ աշտարակի վրա և խոշոր տառերով գրեց՝ «Երևան»։

— Թող բոլորն իմանան, որ «Սասունցի Դավթի» Հայրենիքը Երևանն է,— ասաց նա։

Կես ժամ հետո փառապանծ տանկը սլանում էր Պորտ-Արտուրի փողոցներով...

***

Մեր շքնաղ մայրաքաղաքի փողոցներով նաև դույնի մի ավտոբուս է սլանում։ Շոֆերական խցիկում նստած է մեքենավար Ռոբերտը...

# ԼՈՒՍԱԲԱՑԻՆ

(Հատված վեպից)

ԱՂԱՎՆԻ

Նկ. Վ. ԹԵՎԱՆՅԱՆԻ

1

Գարիկը տղամարդավարի փնչալով ու տնքալով արեխներն է կապոտում։ Հետո իր հոր՝ Ավետ ապոր բրբրված շինելը գցում է վրան ու կարգադրում.

— Կնիկարմա՛տ, հետևիցս կգաս։

Ես հնազանդորեն հետևում եմ Գարիկին։

Ձյունը փակել է բոլոր ճանապարհները, թանձր մառախուղն էլ մյուս կողմից է չոքել աշխարհի վրա։ Գարիկն ինձանից մի երկու քայլ առաջ է, բայց ես դժվարությամբ եմ տեսնում նրան։

— Գարի՛կ, կողքիս հետ գնա, թե չէ, մառախուղ է, բան չի երևում։

— Կնիկարմատի հետ տեղ գնալն էլ այս է, էլի։ Հա՝ կողքիցս գնա, հա՝ փեշս բռնի։

— Գարի՛կ ջան, ախր վախենում եմ կորչես։

— Ըհը՜, կնիկարմատի խելք։ Այս օրը ցերեկով ո՞ւր պիտի կորչեմ։ Ահագին տղամարդն առաջն ընկած գնում է, իսկ սա թե՝ «վախենում եմ կորչե՜ս...,— բերանն է ծամածռում Գարիկը։

Ես նայում եմ նրա փոքրիկ, թզաչափ կերպարանքին ու ծիծաղում։ Այդ «ահագին տղամարդը» ընդամենը ինը տարեկան է, ինձանից էլ դեռ մի տարով փոքր։



— Գարի՛կ· կողքիս հետ գնա, թե չէ, մառախուղ է, բան չի երևում։

— Ի՞նչ ես ծիծաղում,— զայրանում է Գարիկը,— հարսանի՞ք ենք գնում, ինչ է...

— Գարի՛կ, հիշո՞ւմ ես, կաղամբի կոթի համար ինչքա՜ն տզզացիր...

— Ո՞վ... ե՞ս...— զայրույթից կակազում է նա։— Աղջիկ հո չե՞մ, որ տզզամ։ Տզզացի՜ր... Բա ես գնամ այս ցրտին կոթ բերեմ, իրենք տանեն տավարին տա՞ն... Դու լինես չե՞ս տզզա։ Այս անգամ կոթերն այնպես խորը տեղ պահենք, որ Զարդար տատը չգտնի։ Որ գտավ, ես նրա թեշիկը կչարդեմ,— սպառնում է Գարիկը։

Այդ Զարդար տատը մեր տանտիրուհին է։ Անցյալ գարնանից մենք նրանց գոմում ենք ապրում։ Ամառը նրանց արտ ու կալին էինք օգնում, հիմա էլ ամբողջ տան գործը վրաներս է։ Գարիկի մայրը՝ Մարանը պարզապես նրանց աղախինն է։ Տատիկս, չնայած բոլորովին ուժից ընկել է և աչքերն էլ լավ չեն տեսնում, բայց անվերջ նրանց բրդերն է գզում ու մանում։ Այնքան էլ շատ բուրդ ունեն այդ անիծվածները։ Իհարկե, եթե մեկը հարյուր ոչխար ունենա, տունը բրդով լիքը պիտի լինի։ Զարդար տատն ինձ ու Գարիկին էլ օր չի տալիս։ Ես ցախավելը ձեռքիս շարունակ աշխատում եմ գոմում, թե չէ Զարդարը մազերս կպոկի։ Գարիկը եզներն է տանում ջրելու։ Նույնիսկ Ավետ ապերը, որ իսկական մի ոտք ունի, իսկ մյուսը կեսից հետ փայտ է, էլի պարապ չի նստում. լուսաբացից մինչև մութն ընկնելը նրանց տավարին ու ոչխարին է խոտ ու դարման տալիս։

Եվ այս բոլորը միայն այն պատճառով,

որ մենք գաղթական ենք, տուն ու տեղ չունենք...

Ջարդարի տղան, Ալեքն էլ շատ դառը մարդ է։ Բնավորությամբ ու կերպարանքով նա մեր գյուղի տանուտեր*) Սիմոնին է նման. նրա պես հաստլիկ է, քիթն էլ ոնց որ երեսի վրա շռված գորտ լինի։ Համա թե սիրում է գռռգռռալ այդ Ալեքը։ Տեսավ մի քիչ խոտ է թափված, կգոռա.— «Այս ի՞նչ բան է, ապրանքս շան ոտի հետ կերթա». տեսնի հորթը կապից արձակվել է, վզակոթիս կտա, թե «կո՞ւյր ես, մատղաշ անասունը ոտի տակ ընկավ»։ Ես ու Գարիկը ինչքան էլ որ զգույշ լինենք ու թաքուն խաղանք, միևնույն է, Ալեքը կիմանա ու վայ մեզ. կսկսի ողջ օրը մրթմրթալ։

Մի անգամ նա տատիկիս այնպիսի բաներ ասաց, որ սիրտս մղկտաց։ Տատիկս նրանց թոնիրն էր վառել, հացն էր թխել. բայց որովհետև ոչինչ չէին տվել ուտելու, գլուխը պտտվում էր։ Պառկեց, որ մի քիչ հանգստանա։ Մեկ էլ Ալեքը կանգնեց գլխին.

— Պառա՛վ, մտքիցդ խանմությո՞ւն կանցնի։ Հորանցդ տունը դա՞րձ ես եկել, որ խանում-խաթուն փռվել ես,— ֆշշաց Ալեքը։

Այդ գիշեր մինչև լույս տատիկս արտասվեց։ Հետևյալ օրը, երբ մեր տանտերերը կուշտ ու կուռ կերան, կշտացան, Ջարդարը մի չանախ շիլա բերեց դրեց Ավետ ապոր առաջ ու ինձ էլ թե.

— Աղջի՛, կճուճի տակը այնքան շիլա կա, որ երկու շուն կկշտանան, գնա բերի ու կեր։

— Հարկավոր չէ, բալա՛ ջան,— արգելեց տատս,— աղի արցունքով հաց ուտելը մեզ հարկավոր չէ։

Ավետ ապերն էլ վրդովված մի կողմ հրեց չանախը։

— Պա՛հ, քամին մեռավ ցրտու,— ասաց Ջարդարն ու շիլան տարավ տվեց շներին։ Այդ օրվանից ահա մենք ցրտահարված կաղամբ ենք ուտում ու ամեն օր ես ու Գարիկը գնում ենք բոստանները, որ ձյան տակից կաղամբ քանդենք բերենք։ Այդ գյուղում կաղամբը ձյան տակ էր մնացել նրա համար, որովհետև բոստանները հավաքելու ժամանակ այս կողմերում կռիվներ են եղել։ Իհարկե, ցրտահարված կաղամբ ուտելը զզվելի բան է, սիրտդ խառնում է, բայց ի՞նչ կարող ես անել։ Տատիկս ասում է՝ «անճարն է կերել բանջարը»։

Խե՜ղճ տատիկ ջան։ Նա բոլորովին ձեռքից գնում է։ Սկզբում միայն կաշին ու ոսկորն էր մնացել, իսկ հիմա լցվում է ու լցվում։

— Տատի՛, չաղանում ես,— ասում եմ ես, նայելով նրա փքված, հողագույն դեմքին։

— Այսպիսի չաղանալուց գերեզմանի հոտ կգա,— հառաչում է նա։— Մենակ այնքան չմեռնեի, մինչև Աղաբեկս ու Սաթոս գտնվեին։

Իսկ Ավետ ապերը այսքան դժբախտություններից հետո էլ նույն կատակասերն է մնացել։ Հենց որ կաղամբը խաշում ու պատրաստվում ենք ուտելու, նա թևերը բշտում է, ծալապատիկ նստում ու մեզ աչքով է անում.

— Դե՛, մանրապճեղնե՛ր, վրա տվեք...

— Պնդերեսությունդ չլիներ, հիմի հազար տարվա մեռելներին էիր խառնվել,— փընթփընթում էր Մարանը։

— Կնի՛կ ջան,— ծիծաղում էր Ավետը,— դու ո՞ւր ես ինձ այն աշխարհը ուղարկում։ Մի սպասիր, աշխարհում այնպիսի բաներ են լինելու, որ ուրախությունից հազար տարվա մեռելներն էլ վեր թռնեն։ Դեռ բոլշևիկը պիտի գա՜, մեր Իվանն էլ հետը՜...

2

Ավետ ապերը վերջերս շատ է խոսում Իվանի մասին։ Ինձ զարմացնում է այն, թե նա ո՞րտեղից գիտի, որ Իվանը պիտի գա։ Բայց որ բոլշևիկները գալիս են, այդ բոլորին էլ պարզ է։ Գյուղացիներն ասում են, որ բոլշևիկները դեռ աշնանն են Երևանը գրավել ու հենց որ տաքերն ընկնեն, մեր կողմերն էլ կգան։ Իսկ ե՞րբ են տաքերն ընկնելու։ Այս գյուղն էլ հո... կարծես ուրիշ տեղ չկար, եկել ծվարել է հենց Արագածի քթի տակ։

— Ավե՛տ ապեր, բա որ չգա՞ն...

— Կգա՜ն։ Այնպես գան, որ չուզողների բուրդը քամուն տան,— ասում է Ավետն ու խեթ նայում Ալեքին։

— Ա՛յ տկլոր, դո՞ւ ինչիդ վրա ես ուրա-

*) Տանուտեր—հին գյուղի իշխանավոր, գյուղապետ։

խանում։ Բոլշևիկը քեզ համար սամուր քո՞ւրք է բերելու, ի՞նչ է...

— Ինձ համար թե ինչ կբերի, այդ քո գիտենալու բանը չէ, համա քեզ համար բերածը ես գիտեմ թե ինչ է...

Իսկ ես շարունակ մտածում եմ Իվանի մասին։ Կարոտով եմ հիշում այն օրերը, երբ նա մեր գյուղում ջրաղացպան էր և քեռուս հետ ձուկ որսալու էր գնում։

— Որ Իվան քեռին գա, մենք ցուրտը տված կաղամբ էլ չենք ուտի, չէ՞։

— Բա ի՞նչ կուտենք,— վեր է թռչում Գարիկը։

— Ձիր ու չամիչ,— կատակում է Ավետը։

— Ասիր ու պրծար,— ծիծաղում է Գարիկը,— երեխա ես գտել, խաբում ես։ Իսկ ես գիտեմ, որ բոլշևիկը՝ ինչքան ցորեն կա, պիտի հավաքի...

— Ո՞վ է այդ քամին գլխիդ փչել,— լըռջանում էր Ավետը։

— Ի՞նչ քամի, աչքովս տեսա. Ալեք աղան ցորենը մառանի հորի մեջ թաքցրեց, որ բոլշևիկը չտանի...

— Ալեք աղան տեղ ունի, թող իր գլուխը պահի,— մռայլ ասում է Ավետը և բարկությունից հենակը թխկթխկացնելով դուրս գնում։

...Իսկ Ալեք աղան, չնայած ցորենը թաքցրել է, բայց մեզ հետ սկսել է մի քիչ մարդավարի վարվել։ Նա հատկապես Ավետին է մոտ-մոտ անում։ Մեկ էլ տեսար մտավ գոմը, պարապ տեղը դես-դեն ընկավ, անասունների մսուրները նայեց ու Թութունի բսակը հանելով մոտեցավ Ավետին։

— Ասում ես գալիս են, է՜լի,— կեղծ հանգստությամբ հարցնում է նա, բայց երևում է, թե ինչպես վրդովմունքից մատ մատները դողում են ու ծխախոտը ոլորելիս թուղթը պատառոտվում է։— Է՛հ, բարով, հազար բարի։

Այստեղ նա քթածակերից բաց է թողնում դառը ծուխն ու փնչում.

— Առ, առ փաթաթի։— Ավետին է մեկնում Թութունի քսակը։

— Շնորհակալ եմ, կծու է,— հրաժարվում է Ավետը։

— Ավե՛տ, դու տավարի հետ շատ մի



— Առ, առ փաքաքի...

չարչարվի։ Վնասված մարդ ես, հոտաղմշակ կան, թող աշխատեն...

— Չէ, ինչի՞, կամաց-կամաց յոլա կտանեմ։ Ես էլ հո Նունո մայրիկի պես հորանցս տունը դարձ չե՞մ եկել,—խայթում է Ավետը։

— Հիմի՞ հայի բոլշևիկն է եկողը, թե՞ ռուսի...

— Որն էլ որ գա, ինձ համար լավ է։

— Է՛հ, մե՛զ համար ինչո՞ւ պիտի վատ լինի, որ... Ո՞մ հավին ենք քշա ասել, ո՞ւմ թանին՝ թթու։ Ողջ գյուղը գիտե, որ տարուց ավել է օճորքիս տակը ապրում ես, եղբոր պես ենք եղել։ Այդ եկողներն էլ մարդ են, կհասկանան...

— Կհասկանան, բա ոնց,— դառը ժըպտում է Ավետը։

Այսպես զրուցում են, իրար տրամադրությունն շոշափում ու բաժանվում, մեկը դժգոհ և տագնապած, մյուսն՝ ուրախ և անհանգիստ։

3

Դրսում արդեն ձնհալ է։ Լեռների արևկող լանջերն արագությամբ մերկանում են։ Ձյունը դեռ փեշերը չհավաքած, նրա տակից դուրս է նայում ձնծաղիկի բացկապույտ կոկոնը։ Շուտով ճնճղապաշարն էլ դուրս կգա, հետո՝ հոտաղփլավին ու սիբեղը, սինձը, էրժնակը։ Մի խոսքով հազար տեսակի

բանջար ու խոտ. վերջապես կազատվենք այս գարշելի կաղամբից։

Միայն վատն այն է, որ Ավետ ապերը հիվանդացել է։ Անցյալ օրը մենք նրան համոզեցինք ու հետներս ձնծաղիկի տարանք։ Ավետ ապերն էլ հո, ինչպես Մարանը կասեր, բոլորովին իրա հալին չի մնում։ Այնպես էր ծիծաղում ու մի ոտքի վրա



...շշնջում է նա ու ինձ սեղմում կրծքին։

թռչկոտում, որ թամաշի բան էր։ Իսկ մենք կախվում էինք ուսերից ու տապալում ձյան մեջ։ Հետո սկսեցինք հորթերի նման տըրտինգ տալ։

Տուն վերադառնալուց մի քիչ հետո Ավետ ապերն սկսեց սրթսրթալ։ Գնաց մեջքը դեմ արեց Ջեյրան կովի մեջքին, պառկեց ու դողում է։

Երեկոյան, երբ կովերը կթում էին, Զարդարը մի բաժակ կաթ բերեց Ավետին, բայց նա կաթը չխմեց ու կեսգիշերին քնեց։

Իսկ իմ քունը չի տանում։ Աչքերս փակում եմ, կաթի բաժակն ասես թե ոտքեր առած գալիս է իմ կողմը։ Դուրեկան կաթնահոտից պնչերս լայնանում են։ Ախր քանի տարի կլինի, որ ես կաթ չեմ խմել... Կարծեմ Գարիկն էլ քնած չէ։ Ես լսում եմ նրա ֆսֆսոցը, ու մեկ էլ տեսնեմ՝ նա ձեռքը մեկնում ու մատը խոթում է կաթի մեջ։

— Գարի՛կ, այդ ի՞նչ ես անում։

— Ասում եմ հայրիկի կաթը թթված կլինի,— շշնջում է նա, մատը լպստելով։— Ուզում ես, դու էլ տես, այնքա՜ն համով է՜...

Մենք համտես անելով ամբողջ կաթը խմում ենք։

Ուրեմն կարելի է հանգիստ քնել։ Բայց դրսից ինչ-որ աղմուկ է լսվում։ Ձիերի խըրխինջ, ոտնաձայներ, անծանոթ խոսակցություն։ Ահա մեր դուռը թակեցին։ Մինչև ես կվազեի, Ալեքն արդեն շապկանց կանգնել է դռան հետևը։ Ես ուզում եմ բղավել, բայց նա ֆշշում է վրաս.

— Սո՛ւս արա...

— Ալե՛ք աղա, ռուսերեն են թակում,— շշնջում եմ ես, լսելով դրսի խոսակցությունները։

— Ռուսերեն գլուխդ քարովն ես տալիս,— բարկանում է նա։— Ես ռուսերեն չգիտե՞մ, ինչ է...

Այդ պահին մեկը դրսից կանչում է.

— Хозяин, открой!

— Ի՞նչ է ասում,— շփոթվում է Ալեքը։

— Ալե՛ք աղա, բա ասում էիր հասկանո՞ւմ ես... Ասում են դուռը բաց արա։

Ալեքը զայրացած բամփում է գլխիս։

— Գնա ճրագ բեր, թե չէ, այս մթնով ռուսերեն խոսել չի լինի։

Դուռը բացում ենք ու տեսնում, որ դռան առաջ հինգ թե վեց ձիավոր են կանգնած։ Դրանցից մեկը, մի մորուքավոր մարդ, առաջ է գալիս ու ասում.

— Բարով իրիկուն, ախպե՛ր ջան։

— Իվա՛ն քեռի,— ճչում եմ ես ու նետվում նրա գիրկը։

— Դու ո՞վի աղջիկ... դու ո՞վ,— շփոթվում է նա, գրկելով ինձ։

— Ես Արծիվն եմ, Իվա՛ն քեռի ջան։ Հիշո՞ւմ ես, որ դու մեր գյուղում ջրաղացպան էիր...

— Օ՜ղլինկա,— շշնջում է նա ու ինձ սեղմում կրծքին։— Օ՜ղլինկա...

Իվանի ընկերները զարմացած նայում են։ Ալեքը հո բոլորովին գլուխը կորցրել է։ Նա ձեռքերը թափահարելով ուզում է հասկացընել, որ ձիերը ներս քաշեն։ Ես Իվանի թևից քաշելով վրա եմ տալիս.

*— Իվա՛ն քեռի, Ավետ ապերն էլ այստեղ է, տատիկս էլ, Մարանն էլ. քեռուս սպանեցին, մայրիկիս դաշնակ Կարոն փախցրեց, մենք խաշած կաղամբ ենք ուտում...*

*...Իվանը շինելի փեշերը հավաքած չոքում է Ավետի մոտ ու գրկում նրա գլուխը.*

— Дорогой Авет... *Ախպե՛ր ջան...*

*Ավետը բացում է աչքերը, պղտոր հայացքով շուրջը նայում ու շշնջում է.*

*— Իվա՛ն, ա՛յ տղա, ժամանակին հասար...*

*Իսկ դրսում արդեն բացվում է գարնան առավոտը:*

# ԼԵՆԻՆԳՐԱԴՈՒՄ

ՀՌ. ՊՈՂՈՍՅԱՆ

Նկ. Ս. ՍԱՖԱՐՅԱՆԻ

Միածանի յոթ գույներով են վառվում
Հոկտեմբերյան հրթիռները երկնքում,
Հոր ու մոր հետ փոքրիկ Նինելն է քայլում.
Նա ուրախ է... և աչիկներն են փայլում:
Լենինգրադը Հոկտեմբերն էր իր տոնում,
Իսկ հայրիկը հին օրերից էր պատմում...
— Այս քաղաքում, լավ իմացիր, իմ Նինե՛լ.
Քո պապիկն է ծնվել, ապրել ու կռվել...
Հիշում եմ ես, հայրիկս վաղ արթնացավ,
Հանդարտ, զգույշ մեր անկողնուն մոտեցավ.
«Քնիր, բալիկ» նա շշնջաց ականջիս
Եվ համբուրեց ինձ ու փոքր քույրիկիս:
Մուտքի դուռը, տեսա, մայրիկս բացեց,
Ճամփա դրեց նա հայրիկիս ու լացեց:
Հետո եկավ տխուր նստեց անկյունում.
Իսկ մենք երկար լուռ մնացինք անկողնում:
Նա վերցրեց մի ալ կտոր նուրնրան,
Գործեց ոսկի մուրճն ու մանգաղը վրան:





Երեկոյան մայրս փողոց դուրս եկավ,
Ասեղնագործ կարմիր կտորը տարավ:
Նա փողոցում քաքնվում էր, կռանում.
Մենք զգացինք, որ վտանգ կար փողոցում:
Անսովոր էր մեծ քաղաքը այդ պահին.
Եվ մենք ծածուկ հետևեցինք մայրիկին:

Մարդիկ անցան կարմիր կապած բևերին,
Հրացաններ ամուր սեղմած ուսերին:
Մեկ էլ հանկարծ զրահապատ մի նավից
Բոց երևաց... Արկի ուժեղ պայթյունից
Դղրդացին փողոցները քաղաքում...
— Հաղթանա՞կ է...—զվարթ հնչեց մոտերքում:
— Փա՜ռք Լենինին...—կանչե՛ր, կոչե՜ր անհամար...
Մենք ծածանվող դրոշներ տեսանք ոսկեկար,
Ու լսեցինք երգեր հնչուն և ուրախ,
Տեսանք շարքեր, քայլող վստահ և անվախ:
Առավոտյան դուռը բախեց մայրը մեր,
Ես ու քույրս դուռը բացինք անհամբեր:
Գունատվել էր և փոխվել էր նա այնքա՜ն...
Գրկեց նա մեզ, բացականչեց հաղթական.
— Դուք ազատ եք, իմ մանկիկնե՛ր թանկագին...
Մենք փոքր էինք, չհասկացանք մայրիկին:
— Իսկ հայրիկը ո՞ւր է, մայրի՛կ, ո՞ւր գնաց:
Մայրս տխրեց ու մի վայրկյան լուռ մնաց:
— Իսկ ե՞րբ կգա, որ մենք նրան պինդ գրկենք...
Նա ցույց տվեց մեզ մի դրոշ արնաներկ
Ու վշտաբեկ, խուլ շշնջաց.— էլ երբե՜ք...
Լենինգրադը Հոկտեմբերն էր իր տոնում,
Իսկ հայրիկը հին օրերից էր պատմում:

# ՇՔԵՂ ԴԱՀԼԻՃԸ

Երևանի Օպերայի և բալետի թատրոնի հակադիր կողմում գտնվում է Հայֆիլհարմոնիայի համերգային Մեծ դահլիճը: Նրա նախագծի հեղինակներն են՝ ճարտարապետության ակադեմիկոս Ալ. Թամանյանը և նրա աշակերտն ու որդին՝ Գևորգ Թամանյանը:

Դրսի կողմից ճակատի կորագծի ամբողջ երկարությամբ տեղավորված լայն ու մեծ պատուհանները դահլիճը ողողում են ցերեկվա առատ լույսով: Երկրորդ հարկի գեղեցիկ սյունաշարը ճակատի զարդն է կազմում: Գլխավոր մուտքի աջ ու ձախ կողմից դեպի վեր են տանում մարմարյա լայն աստիճանները: Բրոնզյա քանդակազարդ ջահերի առատ լույսից շողշողում են ֆոյեն ու նրա հարակից սենյակները:

Շքեղ ու գեղեցիկ է լայնարձակ կիսաշրջանաձև դահլիճը: Նրա բարձրությունը հասնում է քսան մետրի: Ցածում ամֆիթատրոնն է, իսկ նրա կողքերից բարձրանում են յարուսները: Պատերի ընդարձակ տարածության վրա տեղավորված են հարյուրավոր բավշյա բազկաթոռներ: Ամբողջ դահլիճում տեղավորվում են 1400 հանդիսատես: Առաստաղից կախված չորս հսկայական բրոնզյա ջահերը էլեկտրական պայծառ լույս են տալիս: Դահլիճի սպիտակ պատերը, բեմի մոտ նրանց շարունակությունը կազմող սլացիկ սյուներն ու կամարները թեթև և ուրախ զգացումով



Դահլիճի մի մասը:



Հայֆիլհարմոնիայի համերգային Մեծ դահլիճի մարմարե սանդուղքը:

են համակում մարդկանց: Այդ ջահերը, որոնցից ամեն մեկը արվեստի մի կատարյալ նմուշ է, պատրաստված են Երևանի էլեկտրաարմատուրայի գործարանում:

Թե բեմի ճակատը և թե դահլիճի առաստաղի մեծ մասը զարդարված են գեղեցիկ և նուրբ քանդակներով, որոնք հայկական օրնամենտների օրինակներ են: Այդ բարդ աշխատանքը ճարտարապետի նախագծով կատարել է քանդակագործ Սուրեն Ստեփանյանը:

Այս շքեղ, մեծ ու հոյակապ դահլիճը կառուցելուց հետո, մնում էր լուծել մի շատ կարևոր հարց: Ինչպե՞ս անել, որպեսզի նա հնչեղ լինի և ձայնը առանց արձագանքելու հասնի հանդիսատեսին: Կառուցողների օգնության հասավ սովետական առաջնակարգ տեխնիկան: Ճարտարապետը լուծել է նաև այս խնդիրը. պատերի զգալի մասը հատուկ սալիկներով են ծածկված: Դրանք կլանում են ձայնը:

Հայֆիլհարմոնիայի համերգային Մեծ դահլիճը նոր Երևանի գեղեցիկ կոթողներից մեկն է:

Նկար՝ Ա. ՋԱԼԱԼՅԱՆԻ




*ՍԱՐՄԵՆ* *Նկ. ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ*

Նստել ենք ահա Սևանի ափին
Ադրբեջանցի մեր նոր հյուրի հետ.
Մենք հանդիպել ենք կյանքի մեծ ճամփին
Ու լավ հուշերով կապվել առհավետ:
Հմայել է մեզ զմրուխտյա հեռուն,
Անվերջ նայում ենք խայտող ջրերին...
Վիթխարի ու գորշ ժայռի ստվերում
Զրույց ենք անում այնպե՜ս մտերիմ:
Խաղում են նրա Գյուլշանն ու Լալան
Ու յոթ տարեկան անուշիկ Արան.
Անմոռանալի՜, թովիչ տեսարան.
Առօրյա՞ է սա, թե չքնաղ երազ:
Խաղաղ են, անդորր և՛ ծով, և՛ եթեր,
Չորս կողմ փռվել է բերքառատ ամառ.

Տղաս վազելով բռնում է թիթեռ
Մեր փոքրի՜կ, փոքրի՜կ Գյուլշանի համար:
Երգը շրթունքին, ժիր ու թռվռան,
Գալիս է ահա մեր սևաչ Նունեն...
Կարծես նրանք մեր բարեկամության
Անքառամ ու պերճ ծաղկունքը լինեն:
Հաշտ ու համերաշխ խաղում են նրանք
Հայրենի ծովի կապույտ եզերքին.
Մանրիկ քարերից շինում են տնակ
Այդ քարիկներով այնքա՜ն քնքշագին:
Այս մանկիկները կաճեն, կամրանան,
Մի օր կդառնան մեծ շինարարներ.
Նրանց գործերով կհպարտանա
Կոմունիստական Հայրենիքը մեր:

# ԴՐՈՒԺԻՆԱՆԵՐՈՒՄ, ՋՈԿԱՏՆԵՐՈՒՄ, ՕՂԱԿՆԵՐՈՒՄ

## ՆԱՄԱԿ ՊԵԿԻՆԻՑ

Սեպտեմբերյան մի առավոտ բուխ աչքերով մի աղջիկ՝ գրքի պայուսակը ձեռքին, արագ քայլերով շտապում էր դպրոց:

Նա հենց նոր էր աստիճաններով բարձրացել երրորդ հարկ ու դասարան մտել, երբ նրա շուրջը հավաքվեցին ընկերուհիները և հայտնեցին, որ ավագ ջոկատավարը պիոներական սենյակում սպասում է նրան: Պայուսակը դնելով աշակերտական սեղանին, նա քայլերն ուղղեց դեպի պիոներական սենյակ:

— Նո՛րա, նամակ ունես,— տեսնելով պիոներուհուն ասաց ընկեր Կարինեն և երկնագույն ծրա՛րը հանձնեց աղջկան:

Օրեր ու շաբաթներ Նորան սպասել էր իր հեռավոր, անծանոթ չին բարեկամուհու պատասխանին: Ինքը վաղուց էր նրան գրել: Վերջապես այսօր նա ստացավ սպասված նամակը: Նորան ցնծում էր: Նա հուզմունքով բացեց ծրարը, հանեց նամակը և սկսեց կարդալ:



*Չինաստանում մեծ ուշադրություն է դարձվում երեխաների դաստիարակության գործին: Նկարում՝ Խեպինի գյուղական կոոպերատիվի ղեկավար Գո Ցեն-յանը զրույց է անցկացնում պիոներների հետ:*

*Ֆոտոխրոնիկա՝ ՏԱՍՍ*

«Սիրելի Նորա, դու գրում ես, որ ուզում ես ծանոթանալ ինձ հետ, այնպես չէ՞: Ես էլ, Նորա, երևակայիր, նույնն եմ ցանկանում:

Ինձ կոչում են Մա Բայ-լու: Ես Պեկինի № 15 միջնակարգ դպրոցի 6-րդ դասարանի աշակերտուհի եմ:

Մեր ընտանիքն ապրում է մայրաքաղաքի «Խաղաղության դարպասի» մոտ: Հայրս հացթուխ է, աշխատում է փռում, մայրս՝ տնային տնտեսուհի, իսկ քույրս ժողովրդա-ազատագրական բանակի մարտիկ է: Ընդամենը չորս հոգի ենք: Ապրում ենք հիանալի՝ բանաստեղծական վայրում: Մեր շուրջը տարածված է մի մեծ պտղատու այգի: Հենց այդտեղ էլ գտնվում է մեր դպրոցը: Դպրոցից դեպի հարավ ձգված է երկար խնուղին: Նրա երկու կողմը բլուրներ կան, իսկ ավելի ձախ՝ գեղեցկատես մի լիճ է: Մենք ունենք սպորտ-հրապարակ, ուր զբաղվում ենք ֆիզկուլտուրայով: Մեր դասարանում կա 50 աշակերտուհի: Բոլորս էլ լավ ենք սովորում: Սիրելի Նորա, մեծ հետաքրքրությամբ ուսումնասիրում ենք ռուսաց լեզուն: Որոշել ենք այդ առարկայից միշտ բարձր գնահատական ստանալ:

Մեզ համար պարզ է, որ ձեր այսօրը՝ մեր վաղն է: Մեր երկրում սոցիալիստական և կոմունիստական հասարակակարգ կառուցելու համար պետք է համառորեն սովորենք. սովորենք ռուսաց լեզուն և օգտագործենք ձեր երկրի առաջավոր փորձը»...

Նորան ուզում էր ամբողջը միանգամից կարդալ. բայց դասի զանգը հնչեց: Նա նամակը պահեց և շտապեց դասարան: Դասի ընթացքում աշակերտուհիները կրկնում էին միջին դարերի պատմությունից անցածը: «Չինաստանը 14—17-րդ դարերում»: Թեման հետաքրքրում էր բոլորին: Նորա Պողոսյանն ուշադիր լսում էր ընկերուհիներին:

Լսում էր նա և մտքով սլանում դեպի այդ հնադարյան երկիրը, որտեղից հենց այսօր ստացել էր բանկագին նամակը:

Մա Բայ-լուն նամակը գրել էր ռուսերեն և չինարեն: Նորան նայում էր չինական անծանոթ տառերին և հիանում:

Դասամիջոցին ընկերուհիներով շրջապատված նա դուրս եկավ միջանցք և սկսեց կարդալ նամակի շարունակությունը:

«...Ի՜մ Նորա, ինչպե՞ս ես դու ապրում: Ինչպիսի՞ հաջողություններ ունես ուսման մեջ: Հուսով եմ, որ դու քո պատասխան նամակում նորություններ կգրես մեզ: Ցտեսություն:

Ցանկանում եմ քեզ, Նորա, առողջություն, ուրա-

խուրյուն և երջանկություն: ՍՍՌՄ–ում կոմունիզմի կառուցման գործի համար մղվող պայքարում եղի՛ր պատրաստ: Այն էլ ասեմ, սիրելի քույր, որ մեր դպրոցը կառուցվել է մոտ ժամանակներս: Ես ակտիվորեն մասնակցել եմ շենքի շինարարությանը: Իմ օրինակելի աշխատանքի համար պարգևատրվել եմ «Շինարար» կրծքանշանով: Անմոռանալի Նորա, նվիրում եմ քեզ այս կրծքանշանը, որպես հաստատ երաշխիք մեր ջերմ բարեկամության: Հուսով եմ՝ այս կրծքանշանը դու կկրես քո կրծքին:

ՄԱ ԲԱՅ-ԼՈՒ»

Նամակի ընթերցումն ավարտվեց: Հավաքվածները խնդրեցին ամբողջ նամակը նորից կարդալ: Նորան չմերժեց:

Երկու օր հետո նա հեռավոր բարեկամուհուն գրեց պատասխան նամակը:

«Անգին Մա Բայ-լու, մենք շատ ուրախ ենք, որ նամակագրական ու բարեկամական կապ ստեղծվեց մեր՝ արևավառ Հայաստանի և հերոսական չին մեծ ժողովրդի պիոներների միջև: Անցյալ ուսումնական տարին փակեցինք ուսման բարձր առաջադիմությամբ: Ամառային հանգիստն անցկացրինք հայրենի գեղատեսիլ վայրում գտնվող պիոներական ճամբարում: Արդեն վաղուց թարմացած ու կազդուրված վերադարձել ենք դպրոց և սկսել պարապմունքները:

Մեր դպրոցը գտնվում է Երևանի Վ. Ի. Լենինի և Ի. Վ. Ստալինի անվան պողոտաների անկյունում: Դպրոցի մոտ, գեղեցիկ պուրակի միջից վեր է խոյանում Ալ. Սպենդիարյանի անվան Օպերայի և բալետի թատրոնի հիասքանչ բարձրաբերձ շենքը: Դպրոցից ոչ շատ հեռու, Մոսկովյան փողոցի վրա գտնըվում է Պիոներների պալատը: Մայրաքաղաքի պիոներներից շատերը սովորում են այնտեղ գործող 152 ինքնագործ խմբակներում: Հորդառատ Հրազդան գետի ափին, չքնաղ ձորում, աշխատում է մանկական երկաթուղին: Այդ ձորում մենք անց ենք կացնում մեր կիրակնօրյա հանգիստը»:

Աղջիկը մի պահ կանգ առավ. էլ ի՞նչ նորություն կարելի է հաղորդել հեռավոր ընկերուհուն: Մտածեց, մտածեց և շարունակեց:

«Ի միջի այլոց, Մա Բայ-լու, այսօր մեր դրուժինան Պրագայից մի նոր նամակ ստացավ: Մեր դրուժինան նամակագրական կապ ունի Հունգարիայի, Ռումինիայի, Լեհաստանի, Բուլղարիայի և մյուս ժողովրդադեմոկրատական երկրների պիոներների հետ: Սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար, սիրելի չին բարեկամներ, եղեք միշտ պատրաստ:

ՆՈՐԱ ՊՈՂՈՍՅԱՆ»

Նա ծրարեց նամակը և որոշեց վաղն անմիջապես ուղարկել: Բայց դրուժինայի պիոներները խնդրեցին Նորային նամակի ուղարկելը մի փոքր հետաձգել, մինչև որ իրենք էլ դրուժինայի անունից մի նամակ կգրեն Մա Բայ-լուի դրուժինային:

Մի քանի օր հետո Երևանից Մոսկվա մեկնող գնացքը դեպի հեռավոր Պեկին էր տանում Նորա Պողոսյանի և № 28 միջնակարգ դպրոցի պիոներական դրուժինայի նամակները:

Գ. ՈՒՄՐ-ՇԱՏ

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ԳՈՐԾԵՐԻ ԾՐԱԳԻՐԸ

*Պիոներական սենյակում, սեղանի վրա կանոնավոր դասավորված էին կոլեկցիաներ, հերբարիումներ, գույնզգույն թելերով պատրաստած ձեռագործներ, պատին փակցված էին ֆոտո-մոնտաժներ և նկարներ: Ջոկատի պիոներների մի տարվա աշխատանքը արտացոլված էր այդ ցուցահանդեսում: Անցյալ ուսումնական տարում կատարած գործերի մասին մանրամասն գրված էր հուշատետրում:*

*Ջոկխորհրդի նախագահ Լիանա Հովսեփյանը հաշվետու ընտրական հավաքույթում զեկուցեց խորհրդի անցյալ ուսումնական տարվա աշխատանքների մասին: Դաստիարակ Աշխեն Գրիգորյանը և ջոկատավար Ժակլենա Աղամյանը օգնել էին Լիանային, որ նա լավ հաշվետվություն պատրաստի:*

*Լիանան խոսեց ոչ միայն դրական աշխատանքների, այլև թերությունների մասին: Նա շատ առաջարկներ մտցրեց ջոկատի հետագա աշխատանքը հետաքրքիր և բովանդակալից դարձնելու համար:*

*Մտքերի աշխույժ փոխանակությանը մասնակցեցին շատ պիոներներ: Կարինեն, Սիլվան, Արշալույսը և ուրիշները թերությունները նշելուց հետո խելացի առաջարկներ արեցին: Դրանից հետո ընտրվեց ջոկատի խորհուրդ: Նախագահ նորից ընտրվեց Լիանա Հովսեփյանը:*

*Հաջորդ օրը հրավիրվեց ջոկատի նորընտիր խորհրդի նիստ: Նիստին մասնակցում էին դասղեկը, ջոկատավարը և օղակավարները:*

*— Հաշվի առնելով պիոներների առաջարկները, մենք պետք է կազմենք ջոկատի հոկտեմբեր ամսվա աշխատանքի պլանը,— բացելով նիստը ասաց Լիանան:*

*Ձայն վերցրեց դասղեկ Աշխեն Գրիգորյանը:*

*— Ես և ջոկատավար Ժակլենան եկել ենք այն եզրակացության, որ այս տարի ուսման որակը բարձրացնելու և դասարանում անցած նյութը ավելի լավ խորացնելու նպատակով լավ կլինի, որ դուք հաճախակի կազմակերպեք թեմատիկ հավաքույթներ, էքսկուրսիաներ և արշավներ դեպի մայրաքաղաքի տեսարժան վայրերը, ծանոթանաք Կոմերիտմիության պատմությանը, զբաղվեք սպորտով: Հարկավոր է հետևել, որպեսզի ջոկատում բոլորն էլ ճշտությամբ կատարեն աշակերտների համար սահմանված կանոնները: Զոյա Կոսմոդեմյանսկայայի անունը կրող ջոկատում ոչ մի պիոներ «երկուս» չպետք է ստանա:*

*Ջոկատի խորհրդի անդամները դաստիարակի խորհուրդներից ոգևորված սկսեցին կազմել հոկտեմբեր ամսվա աշխատանքի պլանը:*

*— Ես առաջարկում եմ հոկտեմբերի 25-ին անցկացնել ջոկատի հավաքույթ «Պիոներների կերպարը մանկական գրականության մեջ» թեմայով,— ասաց Կարինե Տիրատուրյանը.— այդ հավաքույթը մեզ կօգնի ավելի լավ սովորելու, կարգապահ լինելու գործում: Մենք կլինենք Զոյայի, Վասյոկի և մյուս հերոսների նման:*

*Բոլորը մի պահ լուռ էին: Կարինեի առաջարկը լուրջ էր և հետաքրքիր:*

— Կարինեն լավ առաջարկ արեց,— ասաց Լիանա Հովսեփյանը,— այդ հավաքույթն անցկացնելու համար, մենք օղակներին որոշակի հանձնարարություններ կտանք...

Ջոկատի խորհուրդը օղակներին հանձնարարեց կարդալ Կոսմոդեմյանսկայայի «Պատմվածք Զոյայի և Շուրայի մասին», Գուբարևի «Պավլիկ Մորոզովը», Օսեևայի «Վասյոկ Տրուբաչևը և իր ընկերները», Անանյանի «Սևանի ափին», Ն. Նոսովի «Վիտյա Մալեևը դպրոցում և տանը», Թարգյուլի «Պիոներական խոստում» և այլ գրքեր։

— Մենք ուզում ենք, որ մեր այդ հավաքույթին ներկա լինեն գրողները՝ Ստեփան Զորյանը, Անանյանը, Սարմենը, Թարգյուլը,— ասաց Սվետլանան։

Գրողներին հրավիրելու պարտականությունը դրվեց Կարինեի, Սիլվայի և Անահիտի վրա։

Ջոկատի խորհուրդը որոշեց լույս ընծայել պատի թերթ նվիրված «Պիոներների կերպարը մանկական գրականության մեջ» թեմային։ Պատի թերթը պետք է լույս ընծայեին Սիլվա Մկրտչյանը և Լիդա Վարդանյանը։ Որոշվեց նաև հավաքույթի օրը կազմակերպել մանկական գրքերի ցուցահանդես։ Այդ էլ հանձնարարվեց Արշալույսին և Էդիտային։

Միաձայն անցավ Լիանա Հովսեփյանի առաջարկը հավաքույթի վերջում «Գնդի որդին» պիեսից մի հատված ցուցադրելու մասին։

— Ջոկատի պլանում պետք է արտահայտվի նաև օղակների աշխատանքը,— հիշեցրեց ջոկատավար Ժակլենա Աղամյանը,— չէ՞ որ օղակները առանձին պլաններ չեն ունենում։

— Մեր օղակը որոշել է ունենալ երկու հավաքույթ,— ասաց օղակավար Վերա Դարբինյանը,— հավաքույթներից մեկը նվիրված է լինելու «Վլադիմիր Իլյիչ Լենինի ճառը Կոմերիտմիության 3-րդ համագումարում» նյութին, իսկ մյուսը՝ Կոմերիտմիության 35-րդ տարեդարձին։ Երկու հավաքույթներն էլ օղակի պիոներները խնդրել են անցկացնել Պիոներների պալատի Լենինի—Ստալինի սենյակում։

— Լավ կլինի անցկացնել նռնականետման, թռիչքի և վազքի մրցություն,— ասաց Էդիտան։

Խորհուրդը որոշեց սպորտի չորս ձևերից էլ մրցություն անցկացնել օղակներում։

— Երկու տարուց հետո մենք հրաժեշտ կտանք պիոներական ջոկատին. հարկավոր է նախապատրաստել Զոյայի անվան ջոկատի արժանավոր փոխարինողներ, ասաց Հասմիկը,— եկեք վերցնենք երկրորդ դասարանի շեֆությունը...

Հասմիկի ասածը նույնպես ընդունվեց։

— Այս տարի ես եղա Շամշադինի Բերդ գյուղում, մտերմացա միջնակարգ դպրոցի 6-րդ «ա» դասարանի պիոներների հետ։ Առաջարկում եմ կապ պահպանել նրանց հետ,— խոսեց Սիլվան։

— Ճիշտ է, ճիշտ է... կապ ստեղծենք նաև Մոսկվայի, Լենինգրադի, Թբիլիսիի և Բաքվի դպրոցների հետ...

Այնուհետև որոշվեց ջոկատով դիտել «Պավլիկ Մորոզով» բեմադրությունը։ Սոնիկն առաջարկեց, որ ամեն մի պիոներ աճեցնի և խնամի երկու կամ երեք տեսակ ծաղիկ։ Ծրագրվեց հավաքել նաև ծառերի սերմեր և դեղաբույսեր։

— Հոկտեմբեր ամսին ունենալու ենք ջոկատի խորհրդի երկու նիստ,— ասաց Լիանան,— առաջարկում եմ հոկտեմբերի 15-ի խորհրդի նիստում լսել օղակավարների ինֆորմացիան, թե ինչպես են պիոներները կատարում ուսուցիչների տված տնային հանձնարարությունները և օղակները ինչպես են նախապատրաստվում ջոկատի հավաքույթին։ Խորհրդի երկրորդ նիստում՝ հոկտեմբերի 30-ին՝ լսել խորհրդի նախագահի ինֆորմացիան հոկտեմբեր ամսվա պլանի կատարման մասին և մշակել նոյեմբերի աշխատանքի պլանը։

Հաջորդ օրը Երևանի Կրուպսկայայի անվան դըպրոցի Զոյայի անվան ջոկատի պիոներները նորընտիր խորհրդի ղեկավարությամբ անցան աշխատանքի։

Ջոկատի աշխատանքի հարուստ ծրագիրը այժմ արդեն իրագործված է։

Ս. ՄՆԱՑԱԿԱՆՅԱՆ



Զոյայի անվան ջոկատի պիոներներ՝ Ա. Ժամկոչյանը և Ս. Քոչարյանը դպրոցի ծաղկանոցում։

Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ

# Կ Ի Ե Վ

Օ. ԳՈՆՉԱՐ

(Ստալինյան մրցանակի լաուրեատ)

Բարձր բլուրների վրա, կապույտ Դնեպրի ափին տարածվել է քաղաքը, թեավոր և ուժեղ, ինչպես ինքը ժողովուրդը, որն ստեղծել է նրան։ Քաղաք, որը ոչ միայն չի ծերանում, այլ ընդհակառակը, ամեն տարի երիտասարդանում է, գեղեցկանում։

Կի՜և...

...Կիևյան հին քարը շատ բաների մասին կարող է պատմել։ Նա, տեսել է Յարոսլավ իմաստունին, որը հոյակապ տաճարներ, դպրոցներ և գրադարաններ էր հիմնադրում այն ժամանակ, երբ եվրոպական երկրների բարբարոս թագավորները դեռ գազանի մորթիներ էին հագնում և միշտ չէր, որ կարողանում էին գրել իրենց անունները։ Ամերիկան գտնվում էր ինչ-որ տեղ որպես վայրի, անհայտ մի աշխարհամաս, իսկ սլավոնական քաղաքակրթությունն արդեն փայլում էր Դնեպրի ափերին։

Կիևի տարեգրությունը, դա ուկրաինական ժողովրդի փառավոր գործերի տարեգրությունն է։ 1648 թվականին, լեհական շլյախտայի*) դեմ տարված հաղթական արշավանքից հետո, Կիևի փողոցներով հանդիսավոր կերպով անցնում էր Բոգդան Խմելնիցկու ազատագրական բանակը։ Խմելնիցկու պատմական ծառայությունը միայն Ուկրաինայի թշնամիների դեմ մղած պայքարում չէ։ Նա հասկանում էր, որ ուկրաինական ժողովրդի ապագան անխզելիորեն կապված է եղբայրական ռուս ժողովրդի բախտի հետ, որ միայն նրա հետ միասին Ուկրաինան կարող է պաշտպանել իր անկախությունը և պատիվը։

Մեծ կոբզար*) Տարաս Շեվչենկոն Կիևում էր գրում իր ըմբոստ ոտանավորները, որոնք ուղղված էին ցարիզմի և պաների**) դեմ։ Ցասկոտ էին հնչում նրա երգերը ժողովրդի դառը վիճակի մասին։

Ուկրաինայի բոլոր ճանապարհներով ամեն ամառ քայլում էին մռայլ մարդիկ, ոտաբոբիկ, պատառոտված շորերով, տոպրակներն ուսերին։ Գնում էին նրանք Կիև, որոնելու իրենց երջանկությունը։ Եվ երբ դիմացը գծագրվում էր ոսկեգմբեթ քաղաքը, թափառական ուխտավորները չոքում էին ճանա-



Բնակելի նոր շենք Կիևի գլխավոր փողոց «Կրեշչատիկում»: Ֆոտոխրոնիկա՝ ՏԱՍՍ

*) Շլյախտա—լեհական մանր ազնվականություն։

*) Կոբզար—բանաստեղծ, երգիչ։

**) Պան—պարոն (լեհերեն)։

*պարհի մեջտեղն ու աղոթում իրենց և իրենց երեխաների վիճակի համար։ Նրանք չէին հասկանում, որ այդ վիճակը չպետք է աղերսել Պեչորյան վանքում, այլ նվաճել սեփական ձեռքերով։*

*Լենինը և Ստալինը աշխատավոր մարդկությանը ցույց տվեցին ազատագրության, ազատ կյանքի ուղին։ Սրանից կես դար առաջ Կիևում արդեն թնդում էին պրոլետարական մայովկաները։ Իսկ Կիևի ընդհատակյա բանվորական թերթերում տպագրվում էին մեծ Լենինի հոդվածները։*

*Նոր դարաշրջանի արշալույսին, երբ Ռուսաստանի ժողովուրդներն ապստամբեցին շահագործողների դեմ, ռուս եղբայրների հետ միասին Զմեռային պալատի վրա գրոհի գնացին նաև ուկրաինացի բանվորները և գյուղացիները՝ զինվորական շինելներ հագած։*

*Հերոսական պիտերցիների օրինակով Կիևի զինանոցը ապստամբության դրոշ բարձրացրեց ընդդեմ վաճառված կենտրոնական ռադայի*)։ Ուկրաինան ուղարկեց Վորոշիլովի և Պարխոմենկոյի, Շչորսի և Բոժենկոյի փառապանծ գնդերը Սովետների իշխանության համար պայքարելու։*

*Կարմիր Բանակը հայրենի հողից քշեց գերմանական զավթիչներին և սպիտակ լեհական պաներին։ Ուկրաինայի վրա ծածանվեց ազատության արյունաներկ դրոշը։ Նոր ձևով ընթացավ Կիևի կյանքը։ Կառուցվեցին գործարաններ և ֆաբրիկաներ, բարձրացան նոր տներ։ 1934 թվականին Խարկովից Կիև տեղափոխվեց Ուկրաինայի մայրաքաղաքը։*

*Ով տեսել է Կիևը գարնանը, նա երբեք չի մոռանա նրա անկրկնելի հրապույրը։ Ակացիայի և շագանակենիների սպիտակ, քընքուշ ծաղիկների մեջ սուզվում են արևային փողոցները։*

***1941 թվականի հունիսի լույս 22-ի անմոռանալի գիշերը սովետական ժողովրդի խաղաղ կյանքն ընդհատվեց։ Քաղաքի փողոցներում ընկան առաջին ֆաշիստական ռումբերը։ 1941 թվականի աշնանը, արյունահեղ մարտերից հետո, մեր զորքերը թողեցին** Կիևը։ Սովետական մարտիկները սրտի դառնությամբ էին հեռանում դեպի արևելք։ Բայց նրանցից ամեն մեկը հավատում էր, որ Կիևը չի լինի ֆաշիստական կալվածք, որ սովետական զորքերը կվերադառնան և հաղթական քայլերգով կանցնեն այս փողոցներով։ «Մարմինը գնացական է, իսկ գործը մնացական»,— ասում է առածը։ Բայց սովետական մարդիկ երբեք չեն մոռանա, թե ինչպես ֆաշիստները խոշտանգեցին և կործանեցին գեղեցիկ Կիևը։ Չեն մոռանա պայթեցված և այրված տները, Դնեպրի մեջ ընկած երկաթե ծռմռված կամուրջների կառուցվածքները, սրբապղծված Պեչորյան վանքը, կողոպտված համալսարանը։*

*Սովետական Ուկրաինան ֆաշիստական հրոսակներից ազատագրվելուց հետո կիևցիները մեծ եռանդով սկսեցին վերականգնել հարազատ քաղաքը և նրա ձեռնարկությունները։ Եվ այժմ, Սովետական Միության շատ քաղաքների գործարաններում և ֆաբրիկաներում կարելի է հանդիպել Կիևի մեքենաշինական գործարանների մարկան կրող մեքենաների և սարքավորման։*

*Ամուրով, Դնեպրով և Բալխաշով լողում են շոգենավեր, որ թողարկել են Կիևի «Լենինսկայա կուզնիցա» գործարանը և Ստալինի անվան նավաշինարանը։ Հռչակված են Կիևի մոտոցիկլետները։*

*Անհնար է թվարկել այն ամենը, ինչ արտադրվում է Կիևում։*

*Սովետական Ուկրաինայի մայրաքաղաք Կիևում կենտրոնացված են բազմաթիվ կուլտուրական հիմնարկներ։ Դեռ սովետական իշխանության առաջին տարիներին այնտեղ ստեղծված էր Ուկրաինական ՍՍՌ Գիտությունների ակադեմիան։ Նա այժմ միավորում է 30 խոշոր գիտա-հետազոտական ինստիտուտ։ Նրանցից շատերը համամիութենական նշանակություն ունեն։*

*Կիևում մոտ 25 բարձրագույն ուսումնական հաստատություն կա։ Դրանք պատրաստում են մասնագետներ Ուկրաինայի ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի համար։ Քաղաքում շատ թանգարաններ կան։*

---

*) Կենտրոնական ռադա—Ուկրաինայի կազակների ճանրային ժողով։

«Թանգարանային քաղաքում», Պեչորյան վանքի շրջապատում է թաղված Յուրի Դոլգորուկին՝ Մոսկվայի հիմնադիրը։ Մոսկվայի ութհարյուրամյակի պատվին Կիևի աշխատավորները նրա գերեզմանի տեղը դրանիտե սարկոֆագ կանգնեցրին։

Այժմ Կիևը վերակառուցված է վերականգնման գլխավոր պլանով։ Ինչպիսի՞ն կդառնա Կիևը այդ պլանի կատարումից հետո։ Այն ժամանակ կառաջանան նոր ռայոններ, ամենից առաջ Դնեպրի երկայնքով, հարավում՝ Պեչորսկի ուղղությամբ։ Այստեղ արդեն գցված է Ուկրաինայի Գիտությունների ակադեմիայի բուսաբանական այգին, որը գրավում է 200 հեկտար տարածություն։ Փողոցները պետք է վերակառուցվեն։

Կրեշչատիկը և նրա մերձակա թաղերը արագ կառուցվում են։ Կրեշչատիկի երկայնքով աճում են պետական հիմնարկների, ունիվերսալ խանութների հսկայական շենքերը։ Շենքերի ձևավորման ժամանակ նշանակալի չափով օգտագործվում են ուկրաինական գեղարվեստական ստեղծագործության մոտիվները։ Կիևի զարդը կլինի հաղթանակի մոնումենտը Ստալինի անվան հրապարակում։

Եթե քաղաքի զարդը նրա նոր փողոցները, պալատներն ու պուրակներն են, ապա Կիևի հպարտությունը՝ մարդիկ են։ Մի ժամանակ ռտաբոբիկ աշխատանքի գնացած մարդկանց որդիներն ու դուստրերը այժմ մասնակցում են Ուկրաինայի Գերագույն Սովետի սեսիաներին, գիտական հայտագործումներ են կատարում, գրում են վեպեր, գյուտեր են անում, ստեղծագործում։

Ամբողջ սովետական ժողովրդի հետ միասին, կիևցիները պայքարում են մեր սիրելի Հայրենիքի հետագա ամրապնդման համար...

Գեղեցիկ է Կիևը իր աշխատանքային լարված օրերին։ Բայց ավելի է գեղեցիկ նա համաժողովրդական տոների օրերին։ Տոնական փողոցներով և պուրակներով դեպի ընդարձակ արևոտ Կրեշչատիկն է շարժվում անվերջանալի մարդկային հոսանքը։ Իսկ կապույտ երկինք բարձրացած սպիտակակուրծք դիրիժաբլի վրա ծածանվում է հսկայական կարմիր կտավը, որի վրա շողում են մեզ համար ամենաթանկ Լենինի և Ստալինի պատկերները։ Այդ դրոշը կոչում է առաջ ու առաջ։ Հազարավոր մարդիկ հետևում են նրան, ինչպես իրենց երջանկության արշալույսին, ինչպես մոտեցող կոմունիզմի նախադուշակին։




«Կիև» կինո-թատրոնի շենքը։

Ֆոտոխրոնիկա՝ ՏԱՍՍ

# ՓՈՔՐԻԿ ՑՈՒՑԱՐԱՐԸ

Հ. ՎԱՐԴԱՆՅԱՆ

Նկ. Ս. ՍՏԵՓԱՆՅԱՆԻ

Հաշեմը առաջին անգամ էր Թեհրանի ցույցին մասնակցում։ Նրա համար հաճելի էր շուրջը տեսնել մարդկանց, որոնք բոլորն էլ իր նման էին հագնված։ Նա իրեն առաջին անգամ պաշտպանված և ապահով զգաց նրանց մեջ։

Տարօրինակն այն էր, որ այդ շարքերի միջից բոլորովին այլ կերպ էր երևում ամեն ինչ. ուղղակի հակառակը։ Կարծես խոշորացույցի միջից նա նկատում էր վաճառատների մոտ խռնված, ճարպակալած կամ սաստիկ ձգված և սարսափահար դեմքեր։ Նա նոր զգաց, թե ինչքա՜ն ուժեղ են իրենք, երբ միասին են։

Նրան մինչ այդ թվում էր, թե հարուստներն ավելի շատ են աղքատներից. բայց հիմա նա համոզվեց, որ իրենք անհամեմատ ավելի շատ են և ուժեղ։ Հարուստների թիվը հանկարծ նվազեց. կարծես նրանք երկյուղից թաքնվեցին։ Նա մինչև անգամ փորձեց մատների վրա հաշվել նրանց։

— Իմ կարծիքով, պետք է ամեն օր ցույց կազմակերպել, սքանչելի բան է... Վաղն էլ ցույց կլինի, այնպես չէ՞... Այսպես միասին շատ լավ է. եկեք չբաժանվենք... տեսե՛ք, տեսե՛ք, թե ինչպես գորգավաճառ Էլահին վախից խանութը փակեց... եթե անձրև էլ գա, չենք ցրվի։ Ե՞րբ որոշեցինք այսպես հավաքվել... քանի՞ հազար մարդ կլինենք բոլորս... ես կասեի՝ կեցցե՛նք մենք...

Հետո Հաշեմը ոգևորված, արագ պատմեց մի բանվորի.

— Անցյալ օրը դրանցից մեկի ավազանը մաքրեցի։ Երեք ռիալով էինք համաձայնել։ Վերջացրի։ Ավազանը մաքրել էի բաժակի պես։ Ճիշտն ասած՝ ավազանն էլ լավերից էր։ Տեսնեմ երկու ռիալ է տալիս։ «Խաբեցի՞ք» ասացի. իսկ նա անամոթաբար ժպտում է...

Հաշեմի երջանկությունը երկար չտևեց. հանկարծ նրանց շրջապատեցին։ Հայտնվեցին զրահամեքենաներ և հեծյալներ. նրանց վրա վազեցին... Եվ ցույցը ցրվեց, իսկ Հաշեմի հին պարկը մնաց մի ոստիկանի ձեռքին։

Հիմա նա նստած է մի ավերախիտ փողոցում, առվի եզրին։ Շատ տխուր է. իսկ գլուխը շարունակ քոր է գալիս։

«Է՛հ, գլուխս քոր է գալիս, պետք է կոխել առվի մեջ» մտածում է նա։ Բայց նա այնքան է տարված իր մտքերով, որ իսկույն մոռանում է գլխի մասին։

«Չէ,— շարունակում է նա,— ես էլ չեմ թողնի, որ այդ խողերը ուտեն վաստակս, խաբեն, մարդու տեղ չդնեն, ծաղրեն ինձ... Հապա թող մի փորձե՜ն... Ճիշտ է ես ոչ վաճառական եմ, ոչ էլ տանուտեր, բայց... ոչ մի բայց,— բարկացավ նա իր վրա,— ինձ էլ պետք է հարգեն»։

Մեկ էլ նրա կռնակի կողմը մի դուռ բացվեց և երևաց կանացի մի գզգզված և ալեխառն գլուխ։ Կինը զննեց շուրջը, կարծես հոտոտեց, և նկատելով Հաշեմին հանկարծ ասաց.

— Է՛յ, տղա՛... մեր բակը կավլե՞ս։

Հաշեմը հանդարտ շուռ եկավ, ինքն էլ զննեց կնոջն ու ասաց.

— Կարելի՜ է։

— Իսկ ավել ունե՞ս։

— Ունեի, տիկի՛ն, բայց քիչ առաջ, մի խումբ սրիկաներ պարկս թոցրին. ավելն էլ մեջն էր։

Կինը մի քիչ մտածեց, ապա ասաց.

— Լավ, քեզ մի ավել կտամ։ Մեկ ու կես ռիալով համաձա՞յն ես։

— Բակը տեսնեմ՝ հետո կասեմ։

Բակը փոքր չէր, բայց աղյուսապատված էր ու գեղեցիկ։ Այնքա՜ն վարդենիներ կային և այնպիսի՜ հաճելի բուրմունք էր տարածված, որ Հաշեմը չկարողացավ չասել.

— Հաճույքով այստեղ կապրեի։ Համաձայն եմ։

Տանտիրուհին Հաշեմին տվեց մի չափազանց կարճ ավել և ասաց.

— Դե՛, սկսիր։

Հաշեմը գործի անցավ։ Վարդենիների արանքները մաքրելիս, նա շարունակ հոտո-

տում էր վարդերը։ Տանտիրուհին հեռվից նկատում էր, ուզում էր դիտողություն անել, բայց երևի մտածում էր, որ վարդը հոտոտելն այնպիսի ծանր հանցանք չի համարվում, որի համար նկատողություն արվեր։ Թեև նրա համար տհաճ էր տեսնել, որ մի հավաքարար հոտոտում է իր բակի վարդերը։

Քիչ անց, բակի դուռը բացվեց և ներս մտավ մեկը, հետո երկրորդը. բայց բանից պարզվեց, որ երրորդն ու չորրորդն էլ գոյություն ունեն։ Ինչքան էլ տարօրինակ կամ անսպասելի էր Հաշեմի համար, այնուամենայնիվ հինգերորդն էլ հայտնվեց։

«Երևի առաջինը հայրն է, որովհետև շատ է ծեր, իսկ մնացած չորսը՝ տղաները։ Տանտիրուհին էլ՝ անպայման աղջիկը»։

Հոր հետևից եկող որդին, որը նույնպես ծեր էր, աչքի էր ընկնում նրանով, որ յուրաքանչյուր ձեռքում, կրծքի վրա, տանում էր մեկական փոքրիկ ու կլոր ձմերուկ։

Անցնելով Հաշեմի կողքով, նրանք բոլորն էլ մի մարդու պես խեթ-խեթ նայեցին նրան, երկու փոքրիկ ձմերուկը հանդիսավոր կերպով տարան Թաքցրին բակի երկհարկանի շենքում։ Հետո մեկ-մեկ հանդարտ դուրս եկան և առանց աչքը Հաշեմից հեռացնելու սկսեցին զբոսնել։

«Ձմերուկների չափից երևում է, թե ինչքա՜ն առատաձեռն են։ Գլուխս կկտրեմ, եթե սրանք չեն սպասում, որ պառավը մեռնի. բայց թե ժառանգության համար կգզեն իրար հա՜... Ճիշտ է, տանտիրուհին բակը ավլելու համար ինձ մեկ ու կեսից ավել չավեց, բայց ես սրանց գզվռտոցը տեսնելու համար երկու ռիալ կտայի»։

Հանկարծ զզվանքն ու կատաղությունը պատեց նրան։

«Այս խոզերը անպայման գիտեն, որ մեր ցույցը ցրվեց... իսկ ո՜նց էին ծակը մտել... հիմա անպայման ուրախ են»...

Հաշեմը նայեց նրանց և նրան թվաց, թե իրոք, հենց այդ պատճառով է, որ բոլորն էլ հաճույքով և արհամարհանքով են նայում իրեն։ Ըստ երևույթին նրանք գոհ էին, որ իրենք տերեր էին ծնվել, իսկ Հաշեմը՝ հավաքարար։

— Լա՜վ,— շշնջաց Հաշեմը, մի կողմ շպրտելով ավելը և նստելով թթենու տակ։

— Ինչո՞ւ դադարեցիր, զարմացած հարցրին բոլորը միասին։

— Հանգստանում եմ,— անտարբեր պատասխանեց Հաշեմը։

«Ժլատնե՛ր,— կիսաձայն սկսեց փնթփնթալ Հաշեմը,— հինգ հոգով... տանտիրուհուն դեռ չեմ հաշվում՝ երկու ընկուզաչափ ձմերուկ են ուտում... Հիմարնե՛ր... ես ինքս մեն մենակ դրանցից տասը հատ կուտեմ և վրայից դեռ ջուր էլ կխմեմ. չնայած ձմերուկի վրայից ջուր չի խմվի։ Եկ ու այսպիսի խոզերի բակը ավլիր»...

Հաշեմը շատ էր վրդովված։



...ներս մտավ մեկը, հետո երկրորդը...

Քիչ հետո լսվեցին պնակների և ծնոտների չխկոցներ։ Բակում տարածվեց ճաշի բույրը։ Վարդենիների վրա բացվող ընդարձակ սենյակի լայն բացված դռներից երևում էին ճաշողները։ Կարճ ձեռքերով և հազիվ գետնին դիպչող կարճ ոտներով։



Լսվեց մի ճռռոց...

Հաշեմը հանկարծ ցատկեց, շոշափեց իր գաղտնի գրպանը, գոհ ժպտաց և կամացուկ դուրս եկավ բակից։

Քիչ անց նրա գլուխը նորից երևաց վարդենիների միջից։ Ճաշն ավարտված էր։ Հանդիսավոր լռության մեջ, ծերուկը սկսեց զոհել ձմերուկները, այնպիսի զգուշությամբ, որ կարծես հենց այդ զգուշությամբ էր պայմանավորված ձմերուկների հասած կամ խակ լինելը։

«Սրանք այնպես են լռել և աչքերը չռել, կարծես ձմերուկի միջից ծիտ է դուրս թռչելու»։

Առաջին ձմերուկը խակ դուրս եկավ։ Այդ երևաց նրանց դեմքի արտահայտությունից։ Նրանք հայհոյեցին մրգավաճառին ասելով, որ նա խաբեբա է, որ ազնիվ ու ճշմարտախոս մարդիկ շատ քիչ են մնացել այս աշխարհում...

«Ծիտը թռավ միջից,— ուրախությամբ մտածեց Հաշեմը,— բայց գլուխս կկտրեմ, եթե սրանք դեն նետեն ձմերուկը։ Թեկուզ դդումի համ էլ ունենա՝ կուտեն»։

Եվ իրոք ձմերուկի խակ լինելը միայն տխրեցրեց նրանց. նրանք դեն չնետեցին այն. նրանցից յուրաքանչյուրը ստացավ խակ ձմերուկի մեկական բարակ շերտ և մի բարակ շերտ էլ մյուսից, որը կարծես մի քիչ ավելի հասած էր երևում։

Լսվեց մի ճռռոց, այնպիսի ճռռոց, որից կցանկանային լսել ճաշասրահում նստածները իրենց ձմերուկները կտրելիս։ Տանտերերը նայեցին դեպի բակը, որտեղից եկել էր այդ ձայնը և ապշեցին։ Վարդենիների տակ, ճաշասենյակի դիմաց, գետնին ծալապատիկ նստած էր Հաշեմը և դանակով ճեղքում էր փայլուն կեղևով, հսկայական մի ձմերուկ։ Նրանք մի պահ քարացած դիտում էին, թե ինչպես էր այդ անծանոթ թափառականը կտրատում ձմերուկի լայն շերտերը, հանում էր միջուկը և գերագույն հրճվանքով դնում բերանը։ Ձմերուկը ըստ երևույթին քաղցր էր, թարմ և սառը։

Հաշեմն ուտում էր այնպիսի հանդարտությամբ և անտարբերությամբ, որ կարծես թե շուրջը ոչ ոք չկար։ Այդ պահին նա տանտերերից խլել էր իրավունքը։ Նա դանակը խրում էր ձմերուկի կտորների մեջ, կարծես որսում էր մի կտոր, ապա վեր էր բարձրացնում և բերանը դնում։

Ճաշասրահում ներկաները հանկարծ մի անհանգիստ շարժում արեցին ու նորից քարացան։ Բայց ի՞նչ էր անում այդ տղան։ Ո՞րն էր նրա հանցանքը։ Նրանց բոլորի գլխում էլ հանցանքների որակավորման մի խառնաշփոթ էր ստեղծվել։ Գողանո՞ւմ է, մա՞րդ է սպանում, հափշտակո՞ւմ, ստո՞ւմ, հայհոյո՞ւմ, թե՞ կողոպտում է այդ տղան։ Դրանցից ո՞րն էր անում նա։ Նրանք գիտեին մի բան, որ նա գործում է հանցանքներից մեծագույնը։

Հաշեմը նկատեց, թե ինչպես վեց զույգ հնամաշ կոշիկներ, քթերը սպառնագին վեր ցցած, աստիճանաբար շրջապատեցին իրեն։ Խոսել սկսեց ծերուկը.

— Որտեղի՞ց քեզ փող. գողացե՞լ ես։

— Չեմ գողացել, աշխատել եմ։

— Իսկ դանակը մե՞րն է։

— Սա էլ է խմը,— հեգնորեն պատասխանեց Հաշեմը։

Նորից մի անհանգիստ լռություն տիրեց։ Բոլորը լարել էին իրենց մտքերը, բայց ոչինչ չէին կարողանում գտնել ասելու կամ մեղադրելու նրան։ Չէ՞ որ աղան իրեն համար հանգիստ նստած ձմերուկ էր ուտում։

Ծերուկի ծնկները սկսեցին դողդողալ ու միմյանց դիպչել չոր փայտի պես։

— Փոխվում է, փոխվո՞ւմ է աշխարհը,— գոռաց նա,— սա ցո՛ւյց է. ռևոլյո՛ւցիա...

Հաշեմի դեմքը հանկարծ բռնկվեց հաղթանակի և երջանկության կրակով։

— Ինչո՞ւ որոշեցիր, որ ցույց է,— հեգնեց նա,— չլինի կարծում էիր, որ մենք չենք կարող ձմերուկ ուտել... Համը չենք զգա։ Դե լավ, նայեք ինչպես եմ կուլ տալիս։ Դեռ ջուր էլ կխմեմ սրա հետևից, չնայած ձմերուկի վրայից ջուր չի խմվի...

Ու Հաշեմը գերագույն հաճույքով շարունակեց բերանը դնել հասած, կարմիր ձմերուկի կտորները...

---

# Մայր կիվիվը

ՀՈՎՀԱՆՆԵՍ ՇԻՐԱԶ

Նկ. Ս. ՄՈՒՐԱԴՅԱՆԻ

Հոտս ձիով, դաշտերով
Տուն եմ գալիս գիշերով.
Հանկարծ, ինչպես մի չղջիկ,
Վրա պրծավ մի թռչնիկ,
Վրաս ճչաց՝ — Կի՛-վի՛-վի՛...
Ես գույն առա, գույն տվի։
Ինձ թվաց, թե չղջիկ էր.
Բայց երբ տեսա թռչնիկ էր՝
Չիս քշեցի ժպտալով։
Բայց թռչնիկը դեռ գալով
Թևով դիպչում ականջիս
Կարծես աճ էր ինձ տալիս.
Ինձնից առաջ սլանում
Ուշքս իր հետ էր տանում,
Դաշտից հանում. կարծես ինձ
Վռնդում է «իր» դաշտից։
Ու երբ դաշտից հեռացա,
Նա ետ դարձավ։ Զարմացա։
Երբ տուն հասա՝ պատմեցի։
— Կիվիվն է, դա, իմացիր,—
Ասաց հայրս, ժպտալով.—
Քեզ խաբել է աճ տալով։
Այդպես է նա միշտ անում,
Երբ բնին են մոտենում.

Բնի մոտով քշել ձին՝
Չես նկատել ձագերին.
Քեզ խաբել է և այդպես
Հեռացրել բնից քեզ։



Նա դաշտում է բույն դնում
Ու երբ ձագ է նա հանում,
Վագրի դեմ էլ կգնա,
Թե նա բնին մոտենա...



# ԽՈՇՈՐ ՔԱՆԴԱԿԱԳՈՐԾԸ

(1753—1802)

Այս տարի լրանում է ռուս խոշոր քանդակագործ Միխայիլ Իվանովիչ Կոզլովսկու ծննդյան 200-ամյակը։

Կոզլովսկին տասներեք տարեկան էր, որ ընդունվեց Պետերբուրգի Գեղարվեստի ակադեմիան։ Նա մեծ շնորհքի տեր էր։ Լավ քանդակելու համար մի քանի անգամ արժանացել է ոսկյա և արծաթյա մեդալների։

1773 թվականին Կոզլովսկին առաջին կարգի ոսկյա մեդալով ավարտում է ակադեմիան և գործուղվում արտասահման։ Նա այնտեղ մոտիկից ծանոթանում է հին Հունաստանի և վերածնության դարաշրջանի Իտալիայի խոշոր արվեստագետների գործերին։ Նրան հատկապես հրապուրում են Միքել-Անջելոյի և Ռաֆայելի ստեղծագործությունները։ 1782 թվականին Կոզլովսկին ընտրվում է Պետերբուրգի ակադեմիայի անդամ, իսկ մի քանի տարի հետո այնտեղ պրոֆեսորի պաշտոն է վարում։

Մ. Ի. Կոզլովսկու քանդակների թեմաները դիցաբանությունից և պատմությունից են վերցված։ Նրա գործերից նշանավոր է «Սամսոնը», «Ալեքսանդր Մակեդոնացու անքուն գիշերները» և այլ գործեր։

Ռուս մեծ ժողովրդի հերոսական անցյալին է նվիրված Սուվորովի արձանը։ Կոզլովսկին այդ արձանը կերտել է 1801 թվականին, բրոնզից։ Ամբողջովին զրահավորված, սաղավարտը գլխին, աջ ձեռքին՝ թուրը, ձախ ձեռքին՝ վահանը, խրոխտ կեցվածքով կանգնած է Սուվորովը։ Նա հաղթանակի, արիության և հերոսության մարմնացումն է։

Հուշարձանի կառուցվածքը արտահայտիչ է և պարզ։ Թշնամիների դեմ ռուս ժողովրդի մղած պայքարի գաղափարը Կոզլովսկին երբեմն արտահայտում է դիցաբանական բնույթի քանդակներում։

Կոզլովսկին 18-րդ և 19-րդ դարի ռուսական քանդակագործության պատմության մեջ մեծ դեր կատարեց։ Նա իր ստեղծագործություններով հարստացրեց ռուսական քանդակագործական արվեստը, որն իր արժանի տեղն ունի համաշխարհային կերպար-



վեստի պատմության մեջ։ Մ. Ի. Կոզլովսկին մեռավ 1802 թվականին, 49 տարեկան հասակում։

Լ. ԱԶԱՐՅԱՆ

(Աստիրանտ)

# ՌՈՒՍ ԱՌԱՋԻՆ ՎԱՐՊԵՏԸ

*ԱՐԾՐՈՒՆ ՍԱՐԳՍՅԱՆ*
*(ՍՍՌՄ վարպետության թեկնածու)*

Առաջին շախմատային գիրքը ռուսերեն լույս տեսավ 1824 թվականին Պետերբուրգում:

Գրքի հեղինակը անցյալ դարի առաջին կեսի ռուս ամենաուժեղ շախմատիստ, ռուսական առաջին վարպետ Ալեքսանդր Դիմիտրովիչ Պետրովն էր: Ժամանակակիցները նրան անվանում էին «Հյուսիսային Ֆելիդոր» (ֆրանսիացի Ֆելիդորը 18-րդ դարի ամենաուժեղ շախմատիստն էր):

Այն ժամանակ Ռուսաստանում շախմատն այնքան էլ տարածված չէր: Ոմանք կարծում էին, թե շախմատը միայն ժամանցի ու հաճույքի խաղ է: Պետրովն առաջինն էր, որ դուրս եկավ այդ կարծիքի դեմ: Նա գտնում էր, որ շախմատային խաղը կարևոր դեր ունի մարդու մտավոր ունակությունների զարգացման, ուշադրության ու կամքի ուժի դաստիարակման գործում: Նա շախմատը համարում էր խորիմաստ ու չափազանց գրավիչ ուսմունք:

Պետրովը գրում էր, թե՝ լավ խաղալու համար անհրաժեշտ է գիտենալ այդ խաղի տեսությունը: Նա իր ընթերցողներին խորհուրդ էր տալիս ուշադիր վերլուծել գրքում զետեղված պարտիաները. «այդ ձևով վարժվելով,— գրում էր Պետրովը,— չափազանց կարճ ժամանակամիջոցում կարելի է ավելի լավ իմանալ, քան թե առանց օրենքի ու ղեկավարի թեկուզ ամբողջ տարիներ խաղալով»: Նա գտնում էր, որ շախմատիստի յուրաքանչյուր քայլը պետք է ունենա իր պատճառն ու նպատակը:

Պետրովը շախմատային խաղի ականավոր տեսաբան էր: Այն խաղասկիզբը, որն սկսվում է՝ 1. e2–e4 e7–e5 2. Ձg1–f3 Ձg8–f6 քայլերով, կոչվում է «Ռուսական կամ Պետրովի պարտիա»:

Մինչև իր կյանքի վերջին տարիներն էլ Պետրովը մնաց որպես Ռուսաստանի ամենաուժեղ շախմատիստը: Նրա գերազանցությունն այն ժամանակվա ռուս վարպետների՝ Յանիշի, Ուրուսովի, Շումովի և մյուսների նկատմամբ, որոնք իրենց հերթին հաջողությամբ էին հանդես գալիս արտասահմանի կորիֆեյների դեմ, չափազանց ակնհայտ էր:

Պետրովը բազմաթիվ հաղթանակներ է տարել Վարշավայի լավագույն շախմատիստների դեմ, որտեղ նա ապրել է երկար տարիներ:

Ահա շախմատիստ Շումանսկու հետ խաղացած պարտիաներից մեկում, 13-րդ քայլից հետո ստեղծվեց հետևյալ դրությունը:

Պետրովը խաղալով սպիտակներով ճշտորեն օգտագործեց իր դիրքային առավելությունը և 15-րդ քայլում զոհեցին կերպով զոհաբերեց թեթև ֆիգուրներից մեկը և 17-րդ քայլում մատ հայտարարեց:

(Մտածեցեք ու գտեք, թե ինչպես շարունակվեց այդ պարտիան):



Ա. Դ. Պետրովը համարվում է ռուսական շախմատային կոմպոզիցիայի պիոները: Եվրոպայի և Ամերիկայի շախմատիստները Պետրովի սրամիտ խնդիրների լուծման վրա չարչարվել են տարիներ շարունակ:

Մեծ համբավ ունի Պետրովի «Նապոլեոնի փախուստը Մոսկվայից Փարիզ» հայրենասիրական խնդիրը, որը նվիրված է 1812 թվականի Հայրենական պատերազմին, երբ ռուսական զորքերը Նապոլեոնին դուրս քշեցին Ռուսաստանից:

Ահա այդ խնդիրը.

a1 դաշտը պատկերում է Մոսկվան, h8-ը՝ Փարիզը, h1-ը՝ Պետերբուրգը. սև արքան Նապոլեոնն է: h1–a8 անկյունագիծը Բերեզինա գետն է, որի անցման ժամանակ ռուսները Նապոլեոնին գերելու հնարավորությունը կորցրին: Սպիտակ ձիերը՝ ռուսական հեծելազորն է, որը Նապոլեոնին հետապնդում է մինչև Փարիզ (h8) և այնտեղ էլ մատ հայտարարում:

(Գտեք, թե ի՞նչ քայլերով է կատարվում այդ հետապնդումը):



Ա. Դ. Պետրովը ռուսական շախմատային դպրոցի հիմնադիրն է, մեծագույն շախմատիստ Մ. Ի. Չիգորինի տաղանդավոր նախորդը: Հետագայում Չիգորինը և նրա աշակերտները շախմատի նկատմամբ հանդես բերին նույնպիսի լուրջ վերաբերմունք, հետազոտելու խորություն, ինչպես Պետրովը: Դրա շնորհիվ ռուսական շախմատային դպրոցը համաշխարհային ճանաչման հասավ:

# ԳՐՔԵՐԻ ԱՇԽԱՐՀՈՒՄ

## «Ես շատ գործեր ունեմ»



*Դա սովորական տետրակ չէ, որի սպիտակ թերթերի վրա դուք թելադրություն կամ արտագրություն եք անում։ Դա հրաշալի տետրակ է... Նրա բարակ ու նեղ տողերի միջից լսվում է, թե ինչպես է ծիտիկը թռչում, ինչպես է հովվի սրինգը նվագում, կամ գետակը կարկաչում։ Իհարկե, դուք իսկույն իմացաք, որ խոսքը նոտաների մասին է. իսկ ձեր փոքրիկ քույրերն ու եղբայրները հազիվ թե կարողանան մտածել այդ մասին։ Չէ՞ որ նրանք դեռ փոքր են, ընդամենը 5—6 տարեկան։ Ն. Նայդենովայի այդ բանաստեղծության վերնագիրն է «Հրաշալի տետրակը»։ Ուրիշ շատ հետաքրքրական երևույթների ու առարկաների մասին էլ է պատմում հեղինակն իր այդ գրքում։ Ո՞վ է տեսել, որ երկնքում ամպի ոչ մի կտոր չլինի և հանկարծ անձրև գա... Այն էլ քայլող։ Այո, չորս անիվանի հրաշք անձրև։ Դուք շտապում եք, ուզում եք այդ մասին էլ իմանալ։ Ուրիշ հետաքրքրական շատ բաներ էլ կան այդ գեղեցիկ բանաստեղծությունների գրքույկում։ Կարդալով այս գիրքը՝ դուք շատ ու շատ նոր բաներ կսովորեք։*

## «Երեք պատմվածք»




*Մ. Պրիշվինն այս փոքրիկ գրքույկը նախադպրոցական հասակի երեխաների համար է գրել։ Գրքույկը փոքր է, բայց նրա բովանդակությունը շատ հարուստ է։ Իսկ ովքե՞ր են այդ երեք պատմվածքի հերոսները. վայրի բադերի ծվծվան ձագերը, գոռոզ հավիկը, սպիտակամորթ նապաստակը, փոքրիկ չինական շնիկը։ Պարզ և անպաճույճ լեզվով Պրիշվինն իր փոքրիկ ընթերցողներին պատմում է այդ կենդանիների ու թռչունների մասին։ «Լիմոնը» պատմվածքում նկարագրված է փոքրիկ, գեղնագույն շնիկի արարքները, որի անունը Լիմոն է։*

*Սովխոզի դիրեկտորի կինը՝ Ելենա Վասիլևնան, կենդանիներ շատ է սիրում։ Նրա տանը զանազան տեսակի կենդանիներ կան. գանգրամազ գամփռը՝ Նելլին, որսորդական շունը՝ Տրուբաչը, սևամորթ, ինքնագլուխ կատուն՝ Միշկան։ Այդ կենդանիները հաշտ ու խաղաղ են ապրում։ Իսկ նոր «բնակիչը»՝ Լիմոնը, չի ուզում ընտելանալ, խանգարում է նրանց հանգիստը։ Զարմանալին այն է, որ այդ կովարարը «սարսափեցնում» է գամփռին, կատվին, սերմնաքաղ ագռավին։ Բայց բավական է, որ նրան բռնես, նա կխեղճանա ու կհնազանդվի քեզ։ Այդպես են բոլոր կովարարները։ Հետաքրքիր են նաև մյուս պատմըվածքները։*

*Հ. ՍԵՎԱՆ*

## «Լուսավոր ուղի»




*«Լուսավոր ուղի» գրքույկում զետեղված գործերը պատմում են դեպի մեր մեծ Հայրենիքը Բելոռուսիայի մանուկների տածած ջերմ սիրո մասին, Հայրենական Մեծ պատերազմի տարիներին բելոռուս երեխաների կատարած սխրագործությունների և հետպատերազմյան խաղաղ տարիների մասին։*

*Բելոռուսիայի ժողովրդական բանաստեղծ Յակուբ Կոլասի «Երջանիկ բույեն» բանաստեղծությունը գովերգում է սովետական մորը։ Մի շարք գործեր ցույց են տալիս երեխաների ազնվությունը, ընկերասիրությունը, դժվարություններից չվախենալը։ Չի մոռացվել նաև կապիտալիստական երկրներում ապրող երեխաների թշվառ կյանքը։*

*Լավ է գրված Յանկա Մավրի «Տուբիի արցունքները» պատմվածքը։ Տասներկու տարեկան Տուբին ապրում է Ցեյլոն կղզում։ Նա սովից չմեռնելու համար ստիպված է ծանր աշխատանք կատարել։ Տուբին իր ընկերների հետ միասին ամեն օր սուզվում է ծովի հատակը և այնտեղից մարգարիտի հատիկներ է հանում, որոնք չնչին գնով հափշտակում են օտարերկրյա կապիտալիստները։ Մի օր էլ Տուբին սուզվում է ծովի հատակը և դուրս չի գալիս։ Նրան կուլ է տալիս շնաձուկը։ Մարդիկ սպանում են շնաձկանը և նրա որովայնից հանում փոքրիկ Տուբիի հոշոտված մարմինը, զամբյուղի հետ միասին։ Տերերը զամբյուղի մեջ գտնում են մի մեծ մարգարտահատիկ։ Դա գոյացել է սև Տուբիի և նրա պես տառապող մանուկների արցունքներից...*

*«Լուսավոր ուղի» ժողովածուն, որ հրատարակել է Հայպետհրատի մանկա-պատանեկան բաժինը, մի լավ նվեր է մեր ռեսպուբլիկայի մանուկ և պատանի ընթերցողներին։*

*Մ. ՄԱՐՏԻՆՅԱՆ*

# ԽԱՂԵՐ

## Առանց երեքի

Օղակի պիոներներին շրջանաձև նստեցնելուց հետո օղակավար Սուրիկն ասաց.

— Հիմա կխաղանք մի նոր խաղ, որը կոչվում է «Առանց երեքի»: Խաղն այսպես է. հերթով արագ-արագ հաշվում ենք մինչև 100, այն պայմանով, որ միշտ 3-ով վերջացող թվերը չենք ասում: Օրինակ՝ երբ Խաչիկը ասի 12, Արամը 13 չպետք է ասի, այլ անմիջապես 14, երբ Վաչիկը ասի 42, Հակոբը պետք է ասի 44 և այլն: Պարզ է, չէ՞:

— Պարզ է, պարզ է,— ասացին բոլորը:

— Մեկ,— խաղն սկսելով ասաց Սուրիկը:

— Երկու,— անմիջապես վրա բերեց Սարգիսը:

— Չորս,— շարունակեց Գուրգենը:

Խաղը հաջողությամբ առաջ էր գնում: Հանկարծ Կարոն շփոթվեց. 52-ից հետո 54-ի փոխարեն, ասաց՝ 53:

Բոլորը ծիծաղեցին:

— Սա դեռ խաղի հեշտ ձևն է,— ասաց Սուրիկը. — հիմա կխաղանք նաև մի ուրիշը: Խաղի ժամանակ չպետք է ասենք ոչ միայն երեքով վերջացող, այլև երեքի վրա բաժանվող բոլոր թվերը՝ 6, 9, 12, 18, 21, 24 և այլն:

Խաղի այս ձևը ավելի աշխուժացրեց երեխաներին: Նրանցից շատերն սկսեցին շփոթվել, բայց շարունակեցին: Նրանք զգում էին, թե այդ խաղը ինչքա՜ն էր զարգացնում միտքը:

## Գունավոր դրոշներով

Երբ ակորդեոնիստը սկսեց նվագել մի եղանակ, ջոկատավար ընկեր Սարգսի հրահանգով պիոներներն սկսեցին քայլել: Նրանք քայլում էին նվագի հետ համաչափ: Հանկարծ ջոկատավարը օդում ծածանեց փոքրիկ կարմիր դրոշը. այդ նկատելով երեխաներն սկսեցին պարել: Ձեռքերը մեջքերին դրած, ոտքերը եղանակի ռիթմով հատակին խփելով նրանք շարժվեցին դեպի դահլիճի կենտրոնը: Եղանակի տակտը վերջանալուն պես, մի քիչ կռանալով առաջ և ձեռքերն իրար մեջ պտտեցնելով, արագ ետ-ետ շարժվեցին: Հենց այդ պահին ընկեր Սարգիսը ցույց տվեց կապույտ դրոշակը. երեխաների մեծ մասն իսկույն գլխի ընկավ և սկսեցին քայլել կքանիստ դիրքով: Քիչ հետո ջոկատավարը ցույց տվեց դեղին դրոշակը: Խաղացողները սկսեցին կատարել լիցքային վարժություն: Օդում ծածանեց կանաչ դրոշակը. խաղացողներն սկսեցին նորից քայլել:

Ընկեր Սարգիսը երեխաներին նախօրոք բացատրել էր, որ կանաչ դրոշակը քայլելու, կարմիրը՝ պարելու, կապույտը՝ կքանիստ շարժվելու, դեղինը՝ լիցքային շարժում կատարելու ազդանշաններն են: Մի քանիսը մոռացան պայմանական նշանները և խաղի ժամանակ տեսնելով կարմիր դրոշակը, պարելու փոխարեն կքանիստ շարժում կատարեցին: Խաղի վերջում, պիոներների պահանջով, նրանցից մեկը երգեց, մյուսը՝ արտասանեց, իսկ երրորդը՝ ակրոբատիկ շարժումներ կատարեց:

Դուք էլ կատարեցեք այս խաղերը:

Վ. ՊԵՏՐՈՍՅԱՆ

## Խաղ-խնդիր

*Պիոներական հավաքույթից հետո, ջոկատավար ընկեր Համիկը ասաց.*

*— Աղջիկներ, այժմ մի հետաքրքիր խաղ պետք է խաղանք։ Թող ձեզանից երեք հոգի այստեղ գան։*

*Երեք աղջիկ գնացին ընկեր Համիկի մոտ։*

*Նա աղջիկներին ցույց տվեց հինգ ժապավեն և ասաց.*

*— Նայեցեք՝ ի՞նչ գույնի են։*

*— Երեքը սպիտակ են, երկուսը՝ կարմիր.— պատասխանեցին աղջիկները։*

*— Շատ լավ, այժմ թաշկինակներով կապեցեք ձեր աչքերը։*

*Աղջիկները կատարեցին ասածը։*

*Դրանից հետո ընկեր Համիկը յուրաքանչյուր աղջկա գլխին մեկական ժապավեն կապեց, իսկ մնացած երկու ժապավենը պահեց և ասաց.*

*— Հիմա բացեք ձեր աչքերը և ամեն մեկը թող փորձի իմանալ, թե իր գլխին ի՞նչ գույնի ժապավեն է կապած։*

*Ով ձեզանից առաջինն ասի, նա էլ կլինի հաղթողը։*

*Աղջիկներից մեկը նայելով ընկերուհիների գլուխներին կապած ժապավեններին, քիչ հետո ասաց իր գլխի ժապավենի գույնը։*

*Աղջիկն ինչպե՞ս իմացավ այդ։ Փորձեցեք ինքներդ էլ կատարել ու պատասխանել։*

Ա. ԱԹԱՆԱՍՅԱՆ

# ՊԻՈՆԵՐԱԿԱ՛Ն ՔԱՅԼԵՐԳ

ԱՇԽՈՒՅԺ, ՔԱՅԼԵՐԳԻ ԹԱՓՈՎ

*Խոսք Վ. ՏԱԼՅԱՆԻ*
*Երաժշտություն Վ. ԱՐԱՐԱՏՅԱՆԻ*

Պիոներներ ենք պատանի
Համարձակ ու քաջ.
Հայրենիքին պիտանի...
Դե՛, առաջ, առաջ:

КՐԿՆԵՐԳ.
Դպրոցում և ջոկատում
Մեր եռանդն է աճնատնում.
Միշտ պատրաստ ենք պայքարի՝
Մեծ գործի համար:

Առաջինն ենք գործի մեջ.
Ուսման մեջ՝ անհաղ.
Հայրենիքի սերն անշեջ՝
Պայծառ լուսարձակ:

КՐԿՆԵՐԳ.
Դպրոցում և ջոկատում և այլն...

Այգիներ ենք զգում մենք,
Անտառ ու պարտեզ,
Նոր աշխարհ ենք բացում մենք,
Լայն, արևատես:

КՐԿՆԵՐԳ.
Դպրոցում և ջոկատում և այլն...

Թեկուզ դժվար էլ լինի,
Պիոներնե՛ր, զգա՛ստ,
Մեր պանծալի պարտիայի
Մեծ գործին պատրաստ:

КՐԿՆԵՐԳ.
Դպրոցում և ջոկատում և այլն...

# ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

## Մտածիր և գտիր

Մի անգամ Հասմիկը բաժակով սառը ջուր բերեց և ուզում էր ծաղկամանի ծաղիկը ջրել։



Մայրը նրան արգելեց.

— Ձմռան ամիսներին բույսը սառը ջրով ջրել չի կարելի։

Հասմիկը զարմացած հարցրեց.

— Ինչո՞ւ...

---

Այս ամռանը, երբ մենք ջոկատով բարձրանում էինք Թեղենիս սարը, Կարինեն կանգ առավ։

— Ի՞նչ պատահեց։

— Դժվարանում եմ շնչել։

— Ոչինչ, ծովի մակերևույթից շատ բարձր տեղերում շնչելը դժվար է լինում։

— Իսկ ինչո՞ւ է այդպես...

---

Աշոտիկն ու Ռուբիկը դպրոցից տուն էին վերադառնում։ Աշնանային բարակ անձրև էր մաղում։

Աշոտիկը հանկարծ դիմելով Ռուբիկին, հարցրեց.

— Կարո՞ղ ես ասել, ինչո՞ւ աշնանը անձրևի կաթիլներն ավելի մանր են լինում, քան ամռանը...

---

Հայրը նոր ստացած մի ամսագիր էր բերում, իսկ Սուրիկը նրա մոտ նստած ուշադրությամբ նայում էր.

— Վայ,— հանկարծ բացականչեց Սուրիկը,— տես, հայրիկ, տես, նկարիչը սխալ է նկարել...



Հայրը նայեց, նայեց նկարին, ապա ժպտաց ու ասաց.

— Ասա տեսնեմ այս նկարում ի՞նչն է սխալ։

Երեխանե՛ր, դուք էլ Հասմիկի, Կարինեի, Ռուբիկի և Սուրիկի հետ միասին մտածեք և գտեք այս խնդիրների ճիշտ պատասխանը։

---

## Դու էլ փորձիր

Նկարում ցույց են տրված հինգ ուղղանկյուն եռանկյունիներ. թղթից կտրեցեք ճիշտ այդպիսի



եռանկյունիներ և դասավորեցեք այնպես, որ ստացվի ուղղանկյուն եռանկյունի։

## Խնդիր էլեկտրականությունից

*— Ապա ուշադրությամբ նայիր էլեկտրալամպերին,— ասաց Թամարայի եղբայրը դիմելով նրան, և հոսանքին միացրեց էլեկտրավառարանը։— Նկատեցի՞ր, թե ինչպես բոլոր լամպերն էլ սկսեցին թարթել և լույսը աղոտացավ. իսկ հիմա, ա՛յ լամպերը կվառվեն ավելի վառ։*

*Եվ իրոք մի քանի վայրկյանից հետո էլեկտրալամպերի լույսն ավելի վառ դարձավ։*

*— Ահա քեզ մի փոքրիկ խնդիր էլեկտրականությունից. չէ՞ որ դու շատ ես հետաքրքրվում դրանով, բացատրիր, թե ո՞րն է դրա գաղտնիքը։*

*Ես մտածեցի, մտածեցի և գտա։ Առաջարկում եմ ձեզ նույնպես պարզել այդ խնդրի գաղտնիքը։*

## ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

### «Արծաթյա ծիրան»

Գինկգոուն չինարեն բառ է և նշանակում է «արծաթյա ծիրան»։ Դա ճյուղաշատ մի ծառ է, որի բարձրությունը 40 մետր է, իսկ բնի հաստությունը՝ չորս մետր։ Գինկգոուի պտուղները դեղնավուն են, ամուր կորիզով և փոքրիկ ծիրանների տեսք ունեն։ Դրանք սովորաբար բալի նման զույգ-զույգ են լինում։

Գինկգոուի ծառը շատ տարածված է եղել 150 միլիոն տարի առաջ։ Ունեցել է 15 տեսակ։ Գինկգոուի արմավենու տերևների հետքերը գտնվում են Եվրոպայում, Ասիայում, Հյուսիսային Ամերիկայում և նույնիսկ Շպիցբերգենում և Գրենլանդիայում։ Կավճային ժամանակաշրջանի կեսերին գինկգոուն սկսեց ոչնչանալ. բայց մոնղոլներն այդ ծառը համարում էին սրբազան և պահպանում էին։ Վայրի վիճակում գինկգոուի ծառերը փոքրիկ պուրակներով հանդիպում են այժմ միայն Չինաստանում, Կորեայում և Յապոնիայում։

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ






*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ., ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*
*ՎՖ 04948։ Պատվեր 772։ Տիրաժ 5000։ Տպագրական $2^1/_4$ մամուլ։ Ստորագրված է տպագրության 27.X.1953 թ.*

*Հայպոլիգրաֆհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65։*

## ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

1953

### Երիտասարդության օրը



1945 թվականի նոյեմբերին Լոնդոնի Ալբերտ-Հոլլ բազմավորական համերգային մեծ դահլիճում տեղի էր ունենում դեմոկրատական երիտասարդության միջազգային կոնֆերանսը: Իմպերիալիստները շատ ու շատ դժվարություններ ստեղծեցին կոնֆերանսը ձախողելու համար, բայց չհաջողվեց: Աշխարհի 63 երկրների առաջավոր երիտասարդական կազմակերպությունների ներկայացուցիչներ հավաքվել էին մի նպատակով՝ ստեղծել մարտական մի կազմակերպություն, որը ընդունակ լիներ ղեկավարելու երիտասարդության պայքարը հանուն խաղաղության ու ժողովուրդների բարեկամության: Եվ ահա, այդտեղ ստեղծվեց Դեմոկրատական Երիտասարդության Համաշխարհային ֆեդերացիան (ԴԵՀԱՖ): Նոյեմբերի 10-ը, ֆեդերացիայի ստեղծման օրը, 1949 թվականին Բուդապեշտի երկրորդ կոնգրեսի որոշմամբ, հաստատվեց որպես երիտասարդության միջազգային օր: Ամեն տարի, այդ օրը, աշխարհի բոլոր անկյուններում միլիոնավոր երիտասարդ մարդիկ նորից ու նորից ցուցադրում են իրենց աննկուն կամքը՝ պայքարել խաղաղության և դեմոկրատիայի համար:

ԴԵՀԱՖ-ի գործունեությունը մեծ է և բազմակողմանի: Ֆեդերացիայի շարքերում կան 75 միլիոն տղա ու աղջիկ: Նրա աշխատանքներին ակտիվորեն մասնակցում է մեր Հայրենիքի երիտասարդությունը: Ամբողջ երիտասարդները սովորում են սովետական երիտասարդությունից՝ հավատարիմ լինել խաղաղության գործին:

### Պ. Ի. Չայկովսկի

(1840—1893)

1888 թվականի սկզբներին ռուս մեծ կոմպոզիտոր Պյոտր Իլյիչ Չայկովսկին կատարեց համերգային մեծ ճանապարհորդություն Արևմտյան Եվրոպայում: Երաժշտական հասարակությունը նրան ամենուրեք ընդունում էր չտեսնված խանդավառությամբ: Պրագայում տված իր համերգի առաջին օրը նա գրել է. «Դա իմ կյանքի ամենանշանավոր օրերից մեկն է... Որքան մեծ էր խանդավառությունն ու հիացմունքը: Եվ այդ բոլորը միայն իմ հանդեպ չէր, այլ սիրելի Ռուսաստանի»: Եվ իրոք, նրա ամեն մի համերգը ռուսական արվեստի իսկական հաղթանակն էր:



Չայկովսկու ստեղծագործությունները ոչ միայն ռուս, այլ ամբողջ աշխարհի երաժշտական կուլտուրայի մեծ նվաճումներից են: Նրա «Եվգենի Օնեգին», «Պիկովայա Դամա» օպերաները, «Կարապի լիճը» բալետը, չորրորդ, հինգերորդ և վեցերորդ սիմֆոնիաները և ուրիշ շատ գործեր մարդկության սեփականությունն են կազմում:

Պ. Ի. Չայկովսկին ընդունվեց Պետերբուրգի կոնսերվատորիան 1862 թվականին: Քսանչորս տարեկան հասակում, կոնսերվատորիան ավարտելուց հետո, նա ստացավ Մոսկվայի կոնսերվատորիայի պրոֆեսորի կոչում:

Պ. Ի. Չայկովսկին ռուսական արվեստի փառքն է:

### Գիտությունների ակադեմիան

Հայրենական Մեծ պատերազմի ահեղ օրերին, 1943 թվականի նոյեմբերին, Սովետական կառավարությունը որոշում ընդունեց Հայկական ՍՍՌ Գիտությունների ակադեմիա ստեղծելու մասին: Դա մեծ պարգև էր հայ ժողովրդի համար: Գիտությունների ակադեմիա ստեղծելը շատ բանով նպաստեց գիտության զարգացմանը մեր ռեսպուբլիկայում: Դեռ



այն ժամանակ բացված գիտա-հետազոտական նոր ինստիտուտներն ու հիմնարկները, իրենց գործունեության ընթացքում մեծ հաջողությունների են հասել: Մեծ դեր է կատարել աստղագիտության զարգացման գործում Բյուրականի՝ աշխարհի ամենանշանավոր աստղադիտարաններից մեկը: Այդ աստղադիտարանի ղեկավարն է Ակադեմիայի պրեզիդենտ, նշանավոր գիտնական, ակադեմիկոս Վիկտոր Համբարձումյանը: Սովետական գիտության զարգացման գործում զգալի գործ է կատարել նաև ֆիզիկայի ինստիտուտը:

Այժմ մեր Գիտությունների ակադեմիան ունի ֆիզիկո-մաթեմատիկական, տեխնիկական, բիոլոգիայի, գյուղատնտեսության և հասարակական գիտությունների բաժիններ: Դրանք էլ իրենց հերթին ունեն 14 տարբեր ինստիտուտներ, 12 զանազան սեկտորներ, լաբորատորիաներ ու կայաններ:

**ՄԱՆԿԱԿԱՆ ԱՇԽԱՐՀ**









1 Երարդարի № 63 խանութի մանկական բաժնում. 2. Սպանդարյան ռայոնի մանկական կոնսուլտացիայում: 3. Պատանի հանդիսատեսի թատրոն. մի տեսարան «Պավլիկ Մորոզով» պիեսի բեմադրությունից: 4. Խաղի ժամը Երևանի № 55 մանկապարտեզում:

*Ֆոտոմոնտաժ՝ Հ. ՀԵՐԵՔՅԱՆԻ*